1916 № 19.—*Մայիսի 8* ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 *րուբլի*, կէս տարուան 2 *ր.* 50 *կ.* *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝* տարեկան 3 *ր.*, կէս տարուան 2 *ր.* *Արտասահման՝* տարեկան 5 *ր.*, կէս տարուան 3 *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտասարդեան հրապար.* № 7.
Հեռախօս № 29.

*Պատի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* 10 *կոպ.*
*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*
*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*
*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*
*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





ՀԱՅԱՍԷՐ ՕՐ. ԷՄԻԼԻ ՌՈԲԻՆՍՈՆ

# Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում *այս շաբաթ պատերազմական գործողութիւնները կենտրոնացած էին թևերի վրայ։*

*Ծովամերձ շրջանում ռուս զօրքերը զարգացնելով իրենց գործողութիւնները Տրապիզոնից արևուտք և հարաւ-արևմուտք՝ գրաւել են Պլատանա նաւահանգիստը, որով Տրապիզոնը արևմուտքից ապահովւում է։*

*Սակայն գլխաւոր կռիւներն այս շաբաթ Երզնկայի շրջանումն էին կենտրոնացած՝ Բաբերդ-Աշկալա-Մամախաթուն գծերի վրայ։ Թուրքերն, ինչպէս երևում է, այստեղ բաւական թարմ ուժեր են կենտրոնացրել, որոնց տրամադրութեան տակ մեծ քանակութեամբ թնդանօթ ու ռազմամթերք կայ։ Գրեթէ բոլոր ռազմագէտները պընդում են, որ այդտեղ գտնւում են նաև գերմանացոց ու աւստրիացոց գնդեր, թէև մինչև այժմ նրանցից ոչ ոք գերի չէ ընկել։ Կռիւները խիստ յամառ բնաւորութիւն էին կրում Աշկալայից արևմուտք, ուր թիւրքերն այս շաբաթ մի քանի անգամ յարձակման են դիմել ռուսների դէմ և ամեն անգամ ծանր կորուստներով յետ մղուել։ Ապրիլի 30-ից մինչև մայիսի 2-ը այդ կռիւները հասնում են իրենց գագաթնակէտին։ Ապրիլի 30-ին ռուսները արիւնահեղ յարձակմամբ Երզնկայի շրջանում գրաւում*

են մի լեռնագանգուած. այս գործի ժամանակ բացի մեծ քանակութեամբ մարդ կոտորելուց՝ գերում են 30 սպայ և 365 ասկեար։ Որովհետև վերոյիշեալ լեռնագանգուածն իշխում է թիւրքերի դիրքերի վրայ՝ նրանք խոշոր ուժերով խելայն նախայարձակման են դիմում և երկու օրուայ կատաղի կռիւներից յետոյ ստիպում ռուսներին յետ քաշուել դէպի իրենց առաջուայ դիրքերը։ Պատերազմական գործողութիւններն այստեղ դեռ մի որոշ վախճանի չեն յանգել։

Ձախ թևի վրայ ևս թիւրքերը յառաջխաղացութեան փորձեր են անում։ Մայիսի 2-ից սկսած Տիգրանակերտ-Բաղէշ գծի վրայ յամառ կռիւներ են վարում ռուսների դէմ։ Թէպէտև այս թևում ռուսները մի քանի օր առաջ մասնակի յաջողութիւն են ունեցել խլելով թշնամուց մի թնդանօթ, մօտ 2000 հրացան և բաւական քանակութեամբ ռազմամթերք, բայց և այնպէս թիւրքերը առաջուայ թափով շարունակում են յարձակումներ կատարել ռուսների վրայ, իսկ տեղ-տեղ նաև առաջ գալ։

Պարսկական ճակատը այս շաբաթ ևս կարևոր գործողութիւնների ասպարէզ էր։ Ուրմիայի գծի վրայ ռուսները անցեալ շաբաթուայ թիւրքական առաջխաղացութիւնը կանգնեցնելուց յետոյ՝ այս շաբաթ իրենք սկսեցին առաջ ընթանալ և անցնելով թիւրք-պարսկական սահմանը, արագ ընթացքով 50 վերստ առաջ անցան և գնացին Ռևանդուզի շրջանը։ Այստեղի կռւում ռուսների ձեռքն են անցնում 3 թնդանօթ և մեծ քանակութեամբ ռազմի և ուտեստի մթերքներ։ Այսպիսով ռուսները մտնում են Միջագետքի շրջանը։ Նրանք այժմ Մոսուլից 100 վերստ հեռու են գտնւում։ Եթէ թիւրքերը չեն նախատեսել այս առաջխաղացութիւնը և ժամանակին ուժեր կենտրոնացրել ռուսների դէմ, ապա Մոսուլի գրաւելն ամենաշատը մի շաբթուայ խնդիր է դառնում։

Բաղդադի գծի վրայ զօրավար Բարաթովի առաջապահ գնդերն արդէն հասել են Խանըկենի լեռնաշղթային, որ Բաղդադի փականքն է հանդիսանում։ Թիւրքերն այս լեռնաշղթան բաւական ամրացրել են և ըստ երևոյթին պատրաստուել ուժեղ դիմադրութիւն ցոյց տալու ռուսներին։ Աչքի առաջ ունենալով այս հանգամանքը, միաժամանակ և այն, որ այս ռազմավայրում ոչ կարգին ճանապարհներ կան, ոչ ջուր, մինչդեռ շոգերն անտանելի են, պէտք է ենթադրել, որ Խանըկենի լեռնաշղթան գրաւելն ու դէպի Բաղդադ շարժուելը ռուսների համար դիւրին խնդիր չէ։

ԱՒՍՏՐԱ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատի մասին գերմանական պաշտօնական հաղորդագրութիւնները վերջին ժամանակներս խիստ հակիրճ են—«փոփոխութիւն չկայ»։ Եւ իսկապէս բացի հետախուզական գործողութիւններից, որոնք առանձնապէս ուժեղ են հիւսիսային գծերի վրայ՝ այս ճակատում աչքի ընկնող ոչինչ չէ պատահել այս շաբաթ։

Ֆրանսական ճակատի վրայ, ընդհակառակը, բաւական կենդանութիւն է նկատւում։ Վերդէնի տակ գերմանացիք շարունակում են ամրակոծել Մասսի ձախ ափի ամրութիւններն և գլխաւորապէս Մորտոմ ու «304» բարձրութիւնը։ Սակայն նրանց հետևակի յարձակման փորձերը ոչ նախկին չափերն ունեն և ոչ կորովը։ Ինչպէս երևում է, մօտ երեք ամսուայ անյաջող յարձակումները և կրած սարսափելի կորուստները որոշ լքում են առաջ բերել գերմ. գլխաւոր հրամանատարութեան մէջ։ Հասարակութեան հետաքրքրութիւնը ևս դէպի այս կռիւները կամաց-կամաց թուլանում է։ Սակայն փոխարէնն սկսում են ուշադրութիւն գրաւել Շամպանիայի և Արգոնների կռիւները, որոնք հետզհետէ նորանոր ռազմագծեր են ընդգրկում։ Առայժմ գերմանացիների բոլոր յարձակումները յետ են մղուած այս շրջաններում։

Իտալական ճակատում Տրենտինի շրջանում է առանձին կենդանութիւն նկատւում։ Աւստրիացիք այստեղի իրենց զօրքերը ուժեղացրել են, ոմանց ասելով երկու անգամ։ Թէ ինչ ծրագրներ են նրանք իրենց առաջադրել—առայժմ դժուար է ասել։

ԾՈՎԻ ՎՐԱՅ

Այս օրերս մի թեթև ընդհարում է տեղի ունեցել գերմանական և անգլիական հակառականակիր նաւերի միջև՝ առանց կորուստ պատճառելու կռւող կողմերին։ Ամերիկայի և Գերմանիայի վերջին վէճից յետոյ, գերմանական սուզանաւերը կենդանութեան նշան չեն ցոյց տալիս։

***

# Ներքին տեսութիւն

## ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

Խմբագրութիւնս խնդրում է յարգելի բաժանորդներին շտապեցնել բաժանորդագնի և գրքոյկների հետ միասին գրամների առաքումը, որպէս զի կարելի լինի թերթի առաքումը կանոնաւոր շարունակել։

«Համբաւաբեր»-ի նուէրներից պ. Ն. Մ. Շահգիլդեանի հաշուին ուղարկւում է Խաչի գեղ, Խաչակապ և Դաշ-Բուլաղ գիւղերի դպրոցներին և գրադարան-ընթերցարանին մի-մի օրինակ։

Մ. Ղարաքիլիսայից՝ բժիշկ պ. Ա. Վարդանեանը նուիրում է Խոյ շրջ. Սէյդավուր գիւղի դպրոցին 1 օրինակ, և Տ. Միրզոյեանը—Ղարաքիլիսայի Պետրոգրադի որբանոցին մի օրինակ։

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹԻՒՆ *)

II

Ներկայումս Անգլիայում քաջածնականութեան (եւգենիկայի) հիմնադիր Գալտոնից յետոյ հանդիսանում է Պիրսոն (Пирсонъ) քաջածնականութիւնը պիտի յիշէ Պլատոնի խօսքերը՝ «Պետակ[...]անը օրինակ պիտի վերցնի խաշնարածից, եթէ կամենում [...] բարելաւել իւր ազգի սերը։ Առաջներում այդ մաքրումը կատար[...]ւում էր բնական ճանապարհով, բնական ընտրութեամբ[...] Այժմ այդ բանը չի կատարւում, որովհետև ժամանակակից կ[...]տուրան, բարոյագիտութիւնը (էթիկան) չի կարող հաշտուել [...]շեալ գաղափարին, ուստի Պիրսոնը յոյս ունի, որ տեղի կունեն[...] մի այնպիսի աշխարհահայեացք, որ կարողանայ հաշտեցնել բ[...]ջածնութիւնը (եւգենիկան) բարոյագիտութեան (էթիկայի) հե[...] յանուն հայրենասիրութեան, անհատական զոհաբերութեամբ։ Քա[...]ջածնութեան հիմնադիր Գալտոնը իւր մահից առաջ [...] «քաջածնութիւնը յաջողութեան յոյս ունի հասարակական կ[...]

*) Տես «Համբաւաբեր» № 16։

ծիքի պաշտպանութեան, երբ վերջինս կը տոգորուի այդ գաղափարներով»։

Միւս նշանաւոր քաջածնական (եւգենիստ) Ղաւելկ Ելլիս (Гавелькъ Елизъ) մնում է կողմնակից Ղալտոնին և չի պահանջում պարտադիր բժշկական վկայական ամուսնացողներից, այլ կամենում է, որ այդ բանը արուի գիտակցաբար, անհատական կամքով»։ Պիրսոն ընդհակառակն՝ պահանջում է, որ չ'պիտի բաւականանալ լոկ պրոպագանդով մղելով, այլ պիտի զոհել անհատական ազատութիւնը և անհատականութիւնը, որոնք Անգլիացու համար այնքան թանգ են, յանուն ազգային բարելաւութեան ու սեռի ազնուացման.

Քաջածնականների (եւգենիկների) Լոնդոնում կայացած համաժողովում 1912 թ. առաջարկուել են հետագայ միջոցները.

1 Անջատում այլասերուած ամուսիններին երկար ժամանակով արտադրական շրջանում (проиводит. періодъ).

2 Սահմանափակող ամուսնական օրէնքներ. այն՞ է՝ արգելում ամուսնութեան, որոնք ունին յայտնի հիւանդութիւններ՝ ալկոհոլականութիւն, ընկնաւորութիւն, թոքախտ, վատախտ (սիֆիլիս) և խելագարութիւն.

3 Արգելումն ամուսնանալու սերունդների այն ընտանիքներին, որոնց մէջ եղել են վերոյիշեալ հիւանդութիւնները։

4 Արհեստական արգելում սաղմնաւորման յայտնի ընտանիքներում.

5. Յատուկ ընտրութիւն ամուսնացող անձանց.

6. Տալ իրաւունք բազմակնութեան մէկ քանի ընտիր անձանց, սեռի պահպանութեան օգտի համար.

7. Պարտադիր կտրում (кастрація) մի շարք անձանց՝ ապուշներին, ընկնաւորներին, ծանր խելագարներին, ալկոհոլիկներին, անուղղայ յանցագործներին.

8. Փոխանակ կրտման գործադրել աւելի թեթև միջոց ստերջացում (Стермлизація), որը միայն սաղմնաւորումն է ոչնչացում, չխանգարելով սեռական կեանք.

9. Բարելաւում կեանքի այնպիսի պայմանների, որոնք կարող են ազդել ազգաբնակութեան առողջութեան վրայ։

Վերոյիշեալ միջոցներից մէկ քանիսը փաստօրէն գործադրուած են Ամերիկայում։ Վեց շտատներում դարձել է արդէն օրէնք՝ արգելել ամուսնութիւնը խելագարներին, ապուշներին, ընկնաւորներին ու ծանր ալկոհոլիկներին։

Ամենքից լայն է գործադրւում այդ օրէնքը Միչիգանի շտատում։ Ինտեան Շ. 1907 թ. կանանց հիւանդութիւնների մասնագէտ (гинекологъ) Շարկոյի առաջարկութեամբ ընդունել է օրէնք, ստերջացումը նրանց, որոնց սերունդը կարող է լինել վնասակար. 1912 թ. Շտատները մտցրել են ստերջացման օրէնք։ Իսկ այն շտատները, ուր չեն մտցրած այդ օրէնքը՝ ստերջացումը կատարւում է ազատօրէն անհատների բարի կամքով։ Եւրոպական պետութիւններից Զուիցերիայում, Ցիւրիխի հոգեբուժական հիւանդանոցում և համալսարանական կլինիկայում ստերջացնում կատարուել է ապուշների և յանցագործների։

Ուսուցչապետ Օրլանսկին, շատ երկբայօրէն (սկեպտիկ) է նայում վերոյիշեալ միջոցների՝ ամլացման և կրտման վրայ, որոնք լայն կերպով կիրարկւում են Ամերիկայում։

Նոյն վերաբերմունքն է արտայայտում նա բժշկական վերահսկողութեան առթիւ ամուսնական հարցում։ «Եթէ այդ վերահսկողութիւնը կառաջնորդէ մարդկանց մտաւոր և բարոյական բարեշրջման (էւոլիւցիան), հազիւ թէ այդ հսկողութիւնը (контроль) հասնէ իր նպատակին. իսկ եթէ յիշեալ բարեշրջումը տեղի ունենայ, այն ժամանակ էլ հսկողութեան կարիք չի լինիլ։

Քաջածնութեան պահանջն է՝ սահմանափակել մարդասիրութեան (փիլանտրոպային) գործադրութիւնը, որ հանդիպում է շատ դժուարութեան, որովհետև պահանջւում է, որ թոյլերի և հիւանդների մասին հոգատարութիւնը չվնասի ցեղի բարելաւման։ Ղոնզեմանը (Гонземанъ) ցաւում է, որ շատ խոշոսկրաւորներ (ռախիտիկներ) շնորհիւ հոգատարութեան և բժշկութեան առողջանում են։ Առաջարկւում է կռիւ մարդկային բնազդի դէմ, որը, ինչպէս գրել է Դարւինը, արմատն է այն ծառի, որից ծագել է այլասիրութիւնը (ալտրուիզմը)։ Մայրական բնազդը ընդհակառակը՝ աւելի զօրեղ է դէպի թոյլ թերահաս զաւակները՝ ապուշները, ընկնաւորները, սապատաւորները և այլն։

Յայտնի է հանճարաւոր գրողների կենսագրութիւններից, որ շատերը նրանցից երեխայութեան ժամանակ շատ հիւանդոտ, թոյլ են եղել, բայց յետոյ դարձել են հռչակաւոր իրեանց աշխատութիւններով։ Օրինակ Լերմոնտովը խոշոսկրաւոր էր, Վալտեր-Սկոտը ոտքերի հաշմութիւն (параличь) ունէր, Ռուսոն մինչև 10 տարեկան շատ թոյլ էր, Թիէրը և Բալզակը շատ վատ էին սովորում, Ղեարէն ծնուել էր շնչասպառ (асфиксія), արհեստական շնչառութեամբ կենդանացրած, Նիւտոնը օրապակաս է ծնուել (недоношен.) և այլն։

Ոչ մի երկրում սոցիալ մարդաբանական ուղղութիւնն այնպիսի մեծ յաջողութիւն չի ունեցել, ինչպէս Գերմանիայում. Ֆիզիքական զարգացման կուլտը, որ պիտի ձգտի կազմել զօրեղ, դիմացկուն մարդկային ցեղ, այնպիսի աստիճանի էր հասել, որ ամեն մի հոգատարութիւն թոյլերի մասին համարւում էր մի տեսակ չարիք, որի դէմ պիտի կռուել. Մակս Գրուբեր, սոցիալական մարդաբանական սիւներից մէկը, Գերմանիայում ուղղակի գրում է, թէ առողջապահութիւնը վնասակար է։

Իսկական քաջածնութիւնը (եւգենիկան) կը զարգանայ այն ուղղութեամբ, որը ցոյց են տուել Դարւինի և Ղալտոնի վեհ բարձր հոգիները, և կը դառնայ գիտութիւն, որը կը հոգայ մարդկային սեռի ոչ միայն ֆիզիքական, այլ առաւելն նրա հոգեկան զարգացման և կատարելագործման մասին։ Այս խօսքերով է վերջացնում ուսուցչապետ Օրլանսկին իր շատ լուրջ յօդուածը։ Մենք կը դառնանք այս խնդրին, բերելով այլ փաստեր հեղինակաւոր անձանց։

Բժ. Բ. Աղասարեանց

15 մարտի 1916 թ.

## ՇԱՄԱԽՈՒ ԹԵՄԻ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Ապրիլի 11-ին Շամախի քաղաքում բացուեց նոյն թեմի ուսուցիչների երկրորդ ընդհանուր համագումարը, որը տևեց մի շաբաթ։

Առաջին ժողովում տեղի ունեցան ընտրութիւններ և որոշուեցին ապագայ ժողովների զբաղման հարցերը. ի հարկէ դպրոցական-կրթական նշանակութիւն ունէին։ Համագումարին ներկայացուցիչներ էին ուղարկել Թիֆլիսի և Բագուի Ուս. Միութիւնները։ Ապրիլի 12-ին սկսեցին պարապմունքները։ Առաջին զեկուցումը կարդաց Թիֆլիսի Ուսուցչական Միութեան ներկայացուցիչ պ. Գ. Էդիլեանը հայոց եկեղեցական-ծխական դպրոցների ծրագրի բարեփոխութեան մասին։ Նրա ասելով մեր ծխական դպրոցների ծրագիրը տասը տարուայ ընթացքում ոչ մի փոփոխութեան չեն ենթարկուել, այն ինչ հիմնական բարեփոխութեան կարիք ունի այդ։ Հենց այն հանգամանքը, որ մեր դպրոցներում 6 տարուան ընթացքում դասաւանդւում են 20 առարկայ, պէտք է բացասական երևոյթ համարել։ Պէտք է ծրագիրը թեթևացնել նախ առարկաների բազմատեսակութիւնից և ապա կրճատել մանաւանդ մի քանի առարկաների ծրագրի նիւթերը։ Մի քանի առարկաների նիւթերը պէտք է համառօտած միացնել։ Պէտք է քչացնել ա. և բ. բաժանմունքների շաբաթական պարապմունքների ժամերը. ա. բաժանմունքի համար բաւական է 18 ժամ, բ.-ի համար՝ 24 ժամ։

Զեկուցանողն առանձին ուշադրութիւն էր դարձնում ծխական դպրոցների համար տարբեր ծրագիր ունենալու հարցի վրայ. Նրա կարծիքով մի ուսուցչով և 6 ուսուցչով դպրոցներում առաջին

*կամ երկրորդ բաժանմունքների ծրագրերը նոյնը չեն կարող լինել։ Պէտք է տարբեր ծրագրեր ունենալ մի երկու և բազմաթիւ ուսուցիչներով դպրոցների համար։ Այդ ծրագրերը կունենան աչքի ընկնող տարբերութիւններ։*

*Պ. Էգիլեանի զեկուցմանը յաջորդեց մտքերի աշխոյժ փոխանակութիւն, որից յետոյ ժողովը եկաւ հետեւեալ եզրակացութեան. ժողովը միաձայն հաւանութիւն է տալիս ծխական դըպրոցների ծրագիրը բարեփոխելու առաջարկին, այն է՝ մի քանի առարկաներ պէտք է կրճատուին, որոշ առարկաներ իրար հետ միացուին և մի քանի առարկաների նիւթերը կրճատուին։ Այլև ցանկալի համարուեց գործնական պարապմունքներին մեծ տեղ տալ ծխական դպրոցներում։*

*Ծխական դպրոցների համար տարբեր ծրագրեր ունենալու հարցի մասին ժողովը առայժմ բաւական համարեց ունենալ միմիայն միդասեան և երկդասեան դպրոցների համար։ Ժողովը ցանկալի համարեց բնագիտութիւնը սկսել ա. բաժանմունքից և աւելացնել հայոց լեզուի ժամերը։ Ծխական դպրոցների շաբաթական պարապմունքների ժամերի կրճատումը անյարմար համարուեց նոյն իսկ ստորին դասարանների համար։*

*Յաջորդ նիստերին զեկուցումներ կարդացուեցին մայրենի լեզուի զանազան դասագրքերի մասին. քննութեան առնուեցին «Լուսաբերը», «Մեր դպրոցը», «Դասընկերը», Աղայեանի և Արաբաջեանի դասագրքերը։ Ժողովականները շեշտում էին այս կամ այն դասագրքի առաւելութիւններն ու պակասութիւնները։ Դասագրքերի ընտրութիւն տեղի չունեցաւ, այլ միայն կարծիքների փոխանակութիւն։ Ղ. Աղայեանի դասագրքերի վերաբերմամբ միայն ժողովը հետեւեալ բանաձևն ընդունեց. «Համագումարը ցանկութիւն է յայտնում վերամշակութեան ենթարկել Աղայեանի դասագրքերն, ինկատի ունենալով նրա անպայման դրական կողմերը»։*

*Յաջորդ երեկոյեան նիստերից մէկում քննութեան առնուեց Ուսուցչական Միութեան խնդիրը։ Բոլորը միաձայն կարևոր էին համարում ունենալ ընդհանուր մի միութիւն. կազմակերպութեան ձևի մասին միայն զանազան առաջարկներ էին լինում։ Կարծիքների փոխանակութիւնից և փոխադարձ զիջումներից յետոյ ընդունուեց հետեւեալ բանաձևը. «Կազմել Շամախու թեմի դպրոցների ուսուցչական միութիւն իւր ներքին գործունէութեամբ անկախ, բայց ընդհանուր կապերով շաղկապուած միւս թեմերի միութիւնների հետ։ Մշակել այս մտքով կանոնադրութիւն և առաջարկութիւն անել Կովկասի Ուսուցչական Միութեան՝ գործադրուող կանոնադրութեան մէջ փոփոխութիւններ մտցնել ներկայացուցչական մարմնի միջոցով»։ Ցանկալի համարուեց ամառուայ արձակուրդներին ունենալ գործնական պարապմունքներ ուսուցիչների համար երգեցողութեան, նկարչութեան, ձեռարուեստի, գիւղատնտեսութեան և այլն։*

*Համագումարի ընթացքում տեղի ունեցան փորձնական դասեր հայոց և ռուսաց լեզուների, թուաբանութեան, բնագիտութեան, երգեցողութեան և ձեռարուեստի։ Այս դասերից մի քանիսը մանաւանդ շատ յաջող անցան։ Փորձնական դասերից մի քանիսը միայն (հայոց և ռուսաց լեզուներինը) քննադատութեան ենթարկուեցին։*

*Քննադատութիւնների ժամանակ ժողովականներն առանձնապէս կանգ էին առնում լեզուների մեթոդական հարցերի վրայ և տալիս յաճախ հետաքրքրական լուսաբանութիւններ։*

*Համագումարի ընթացքում օրական մի ժամ նկարիչ Ս. Յովհաննիսեանը ուսուցիչների հետ պարապում էր նկարչութիւն և ձեռարուեստ միանգամայն գովելի եռանդով։*

*14-ի երեկոյեան ուսուցիչները Շամախու հասարակութեան համար մի գրական-երաժշտական երեկոյթ տուին։ Համագումարին մասնակցող երաժիշտ պ. Անտոն Մայիլեանը ուսուցիչներից մի քանի օրում քառաձայն մի այնպիսի խումբ կազմեց, որի երգածները թէ հասարակութեան և թէ ուսուցչութեան մեծ հրճուանք պատճառեցին։ Օր. Պապովեանի արտասանած մի քանի ոտանաւորները խոր տպաւորութիւն թողեցին հասարակութեան վրայ։ Հանդիսին Խաչ. Աբովեանի մասին խօսեց պ. Բալայեանը, իսկ Միք. Նալբանդեանի մասին՝ պ. Ս. Յակոբեանը։ Երկուսն էլ կենդանի կերպով վեր հանեցին այդ երկու մեծութիւնների հոգեկան-հասարակական արժանիքները։*

*Համագումարի պարապմունքներն անցան շատ յաջող. բոլորն էլ գոհ սրտով հեռացան Շամախուց, յուսադրուած՝ որ եկող տարի մայիսի վերջերն էլի կըհանդիպեն իրար նոյն թեմի կենտրոնական վայրերից մէկում՝ նման բեղմնաւոր աշխատանք կատարելու համար։*

*Մասնակից*

## ԾԱՂԿԷՓՈՒՆՋ ԱՐԵԱՆ ԴԱՇՏԵՐԻՑ *)

### Գ.

### ՄԵԾ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ

*Երկու հակառակ կողմերից իրար դիմող փոթորկաբեր հսկայ ամպերն ահեղագոռ որոտով, հրեղէն շանթերի ձայլի փայլատակումով վերջապէս ընդհարուեցան և անձրևի փոխարէն առատօրէն տեղաց մարդկային յորդ արիւնը։*

*Թխպոտ, մութ գիշեր էր, երբ մեր գունդը մտնեցաւ իր բըռնելիք նոր դիրքերին, որտեղ, մի քանի մանր, անյաջող կռիւներից յետոյ՝ աւստրիացիք մեծ ուժեր էին կենտրոնացրել, վճռական ճակատամարտ տալու մեզ։ Թշնամի բանակները իրարից բաժանում էր Գնիլայա Լիպա կոչուած գետը, որ համաշխարհային այս աննօրինակ պատերազմի պատմութեան մէջ յաւիտեան կը յիշուի սրտի ուրոյն թրթիռով։ Այդտեղ հեզութեան Աստուծոյ տիպար մարդը, իր պէս բանական էակի արեան ծարաւի աննկուն եռանդով ամբողջ երեք օր արիւն էր թափում, արիւն խմում, մահացիր թնդանօթների ռռնոցով կոպիտ ուժի պաշտամունքն էր օրհներգում։*

*Խունացել, դժգունել են այդ ահռելի օրուայ հոգեառնջ պատկերներն ու մտամաշ տպաւորութիւնները,—բայց ընկածների արեամբ յորդացած պատմական Լիպան յիշողութեանս մէջ տպաւորուել է այնպէս կենդանի, կարծես այս վայրկեանիս սպիտակ ֆոնի վրայ ոլորապտոյտ ձգուած կարմիր ժապաւէն եմ տեսնում։*

*Զինուորները, կուշտ կերած ոչխարի հօտի պէս, հաճոյքով փռուեցին խոնաւ գետնին, կազդուրող քնի միջոցով վերականգնելու ցերեկուայ ծանր արշաւից սպառուած իրենց ուժերը։ Ինչքան էլ մահուան վտանգը մօտահաս է, այնուամենայնիւ, մարդս յաճախ, բոլորովին ինքնաբերաբար, անձնատուր է լինում բնական օրէնքի պահանջին, որովհետև կեանքն իրօք, շատ դէպքերում, նման է լոկ լարուած մեքենայի... Իւր սև քողը մեզ վրայ փռած երկինքը, հոգեվարքից առաջ խաղաղ ննջող որդուն ակնապիշ մօր պէս, լուռ արցունք էր թափում. բարակ քամին դալուկ շեշտերով մեր մահերգն էր սվսւում, իսկ աւստրիացոց բաց թողած կանաչ ռակետները մեր առաջիկայ յուղարկաւորութեան ջահերն էին փոխարինում։*

*Գետի այն ափից լսուող աննկուն հրացանաձգութիւնը պարզ ապացոյց էր, որ աւստրիացիք բռնուած էին ջղային տենդով։ Ասենք, այդ բնական էր։ Երկու անգամ բաւական լուրջ ծեծ ուտելուց յետոյ, երկրորդի էլ երկիւղը սրտներին, միանգամայն հասկանալի է նրանց ջղայնութիւնը։ Միւս կողմից, գիշերուայ յարձակման ենթադրութիւնը միշտ հակառակորդին յուզում է, ուստի տեական անկանոն կրակով նա ուզում է հասկացնել, որ ինքը պատրաստ է դիմադրելու ամեն պատահականութեան, թէև նրա շրթունքները լուռ մրմնջում են. «Տէր, անց կացրու այս բաժակը...*

*«Վուլիկ, թանկագին Վուլիկ, թող, թող համբուրեմ քեզ»*

---

**) Տես «Համբաւաբեր» № 5։*

կամ նենգ ժպիտով, նրանց գրաւում, բերում է մինչև գետի բոսոր ալիքները, ապա դիւային քրքիջով դիտել է սկսում, թէ ինչպէս նրանք անխնայ ոչնչանում են գազանի փոխուած ռուս զինուորի ձեռքով, որը, փախուստի միջոցով ազատութիւն որոնողներին հետապնդելով, ժանում է նրանց դիրքերը, սակաւաթիւ պաշտպաններին սուինախող անում և, նոր զոհերի արեան ծարաւի, կրկին ու կրկին առաջ է նետւում, մինչև յաջողւում է նրան կանգնեցնել, այդ արիւնոտ նախճիրին վերջ տալ։

Արդէն երեկոյ էր, երբ այս անօրինակ ճակատամարտը իր գլխաւոր կէտերում վերջացաւ, թէև մերոնք շատ տեղերում տակաւին հալածում էին ջարդուած հակառակորդի ողորմելի մնացորդները։ Երկինքն շտապում էր գիշերուայ սև քօղով ծածկել մարդկային այն հսկայական սպանդանոցը, որ ամբողջ օրուայ ընթացքում, այնպիսի առանձին եռանդով լուսաւորում էր արևը։

Աւստրիացոց թողած բատարէաներից ոչ հեռու, զօրքերը, երգ ու աղմուկով վրաններ էին խփում, օջախ անում, իրենց և սպաների համար ընթրիք էին պատրաստում այն ճուտ ու հաւերից, սագ ու բադերից, խոզի խոչկորներից, որ, պատերազմական մեծ աւարի հետ, գրաւել էին թշնամու դիրքերում։ Ամենքի էլ տրամադրութիւնը այնպիսի էր, կարծես նրանք ոչ մարդ էին սպանել, մարդկային արիւն թափել, ոչ էլ հարիւրաւոր ընկերներ կորցրել։ Ռազմական տեսակէտից այդ համարւում է դրական երևոյթ, զինուորական անկուն ոգու բարձրութեան նշան։ Սակայն իմ զգացմունքներն այդ իրողութեան հետ հաշտուել չէին կարողանում. Թւում էր, թէ հարիւրաւոր ընկածների թարմ ուրուականները խաւարի միջից տխրաթոյր հայեացքով մեզ էին նայում, լուռ յանդիմանում, ապա դառն յուսախաբութեամբ յամրաքայլ հեռանում, չքանում էին ամօթը ճնշող, սպանող, չարիքն ու ոճիրները խրախուսող գիշերուայ թանձր մթութեան մէջ։ Ճնշուած, մտամոլոր ես անցայ այնտեղ, ուր հաշւում, խմբերի էին բաժանում բազմաթիւ գերիներին։

Իմ հարցին՝ ինչ են մտածում ձերոնք, տիրող տրամադրութիւնը ո՞րպիսի է ձեր բանակում,— հունգարացի երիտասարդ, վայելչակազմ սպան, ծանր հառաչանքի տխրութեամբ, մաքուր գերմաներէն լեզուով պատասխանեց.

—Մերոնց մասին ձեզ համար մխիթարական շատ բան կը պատմէի, բայց պարտքի գիտակցութիւնը հարկադրում է ինձ՝ լռել...

Երեք շաբաթ անց, երբ արդէն Գալիցիայի մշտադալար մայրաքաղաք գողտրիկ Լւովի վրայ ծածանւում էր ռուսական եռագոյն դրօշակը և, Գրոդեկի եօթնօրեայ խիստ արիւնահեղ ճակատամարտից յետոյ, մենք յաղթական առաջ էինք շարժւում դէպի, լեհ երգերի մէջ այնպէս սիրուած, յորդահոս Սանը,— բնակիչները սիրով պատմում էին այն, որից հրաժարուեց գերի հունգար զինուորականը։ Ջարդուած աւստրիական գնդերի խղճուկ մնացորդները իրենց նահանջի ճանապարհին ողբացել են ու բացականչել.

«Վա՜յ մեզ, վա՜յ մեզ. երկինքը երես է դարձրել մեզնից. Աւստրա-Հունգարիայի ժամը հնչեց, նրա կորուստը անխուսափելի է... Նզո՜վք Վիլհէլմին և պրուսացոց»։

Վ. Արմէն

## ԳԱՒԱՌ

ԱԽԱԼՑԽԱ.—Կիրակի, ապրիլի 24-ին, քաղաքիս Ս. Փրկիչ եկեղեցում, պատարագից յետոյ, տեղի ունեցաւ Բիթլիսի մօտ տեղի ունեցած կռւում զոհուած, հայկական ա. գնդի վաշտապետ Արտաշէս Սուճեանի մահուան առթիւ հոգեհանգստեան կարգ, խուռն երկսեռ բազմութեան ներկայութեամբ։ Խօսեցին դամբանականներ։ Հանգուցեալը տեղացի էր և վայելում էր յարգանք հասարակութիւնից։ Հանգուցեալ Արտաշէսը այն գաղափարական զինուորներից էր, որ անձնազոհ կերպով նուիրուած էին իրանց թշուառ թրքահայ եղբայրակիցների ազատագրման վսեմ գործին, որին և զոհ տուեց իւր դեռ ծաղիկ երիտասարդ կեանքը։ Փառք և պատիւ նրա յիշատակին, փառք անկեղծ ու նուիրուած մարտնչողին...

— Այժմ սար ու ձոր մեզանում պատած է բուսական կենսատու կանաչ սաւանով։ Թէ հացահատիկների և թէ մանաւանդ ծառապտուղների՝ խնձոր և տանձի բերքը այս տարի առատութիւն է խոստանում, եթէ ի հարկէ մինչև վերջը զերծ մնայ բնութեան պատահարներից։

— Պետրոգրադում կայանալիք հայկական համագումարին մասնակցելու համար Ախալցխայից, Կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղի կողմից ներկայացուցիչ է ընտրուած երդ. հաւ. Արմ. Բուդուղեանը։ Երկրորդ պատգամաւորը Ախալցխայից ուղարկելու է տեղական «Հայկական» Կոմիտէտը։ Կոմիտէտի անդամների որոշ շրջանի մէջ ցանկութիւն կայ ընտրելու Կոմիտէտի նախկին նախագահ՝ Գէորգ Ալթունեանին, որը եղել է Կոմիտէտի հիմնադիրներից մէկը և մինչև այստեղից հեռանալը եռանդուն ու բեղմնաւոր կերպով ծառայել։ Եւ իսկապէս նրա նախագահութեան օրօք Կոմիտէտը իւր կոչման բարձրութեան վրայ էր կանգնած։

— Ինչպէս լսում ենք, առաջիկայ կիրակի, մայիսի 1-ին նշանակուած է յիշեալ Հայկական Կոմիտէտի ընդհ. ժողովը՝ նրա ելեմուտքի հաշիւը քննել-հաստատելու և Կոմիտէտի նոր անդամների ընտրութիւն կատարելու։ Արդէն տպագրուած և ցրուած է հասարակութեան մէջ այդ հաշիւը։ Այդ հաշուից երևում է, որ Կոմիտէտը իւր գործունէութիւնը սկսելու օրից, այն է՝ 20 դեկտ. 1914 թուի մինչև 1916 թուի յունուարի 1-ը մուտք է ունեցել 8818 ռ. 42 կոպէկ, ելք՝ 7819 ռ. 82 կոպէկ, մնացորդ 998 ռ. 60 կ.։ Կոմիտէտը գլխաւորապէս հոգս է տարել փախստականներին օգնութիւն հասցնելու, կամաւորներին շորեղէններ անելու, պահեստի և կամաւոր զինուորների ընտանիքներին նպաստներ տալու և այլն և այլն։ Այդ բոլորը եղել է միմիայն տեղական միջոցներով։

Թ.

***

ՍԱՉԽԷՐԻ, 24 ապրիլի.—Այստեղ ամսոյս 6-ին կազմակերպուեց հասակաւորների համար հայերէն գրագիտութեան դասընթացքը։ Դպրոցի աւագ ուսուցիչը յանձն առաւ ձրիաբար կիրակի և տօն օրերին պարապել երկու ժամ։

— Տրապիզոնի առման համար ամսոյս 7-ին պատարագից յետոյ մաղթանք կատարուեց տեղիս սուրբ Աստուածածնայ եկեղեցում. պատարագին երգում էր տեղիս հայոց ուսումնարանի երգեցիկ խումբը։

— Տեղացի հայ օրիորդները, գլխաւորութեամբ օր. օր. Վ. Բէգալեանի, Ս. Մղերեանի, Վ. Ղազարեանի, Ս. Պապիջանեանի և Ն. Կաճկաճեանի կազմակերպում են արդէն վիճակախաղ յօգուտ հայ փախստական որբիկների։ Նոյնն ուզում են անել երիտասարդները։

— Այս տարի այս երրորդ անգամն է, որ վերոյիշեալ նպատակով կազմակերպւում է ժողովարարութիւն։ Չնայելով աշխէրէցիները նիւթապէս աղքատ ժողովուրդ են, բայց իրանց լուման չեն խնայում այս տեսակ բարի նպատակի համար։

— «Համբաւաբեր» շաբաթաթերթը ստանալուն պէս դպրոցումը հաւաքւում է մեծ բազմութիւն. ուսուցիչը կարդալով թարգմանում է վրացերէն, որ լուրերի վրայ մեծ տպաւորութիւն է թողնում։ Այստեղ կեանքը շատ թանգ է. հացի գրուանքան 8 կ., շաքարինը 28 կ., միսը 30 կ., հաւը 2 ռ., ձուի հատը 4 կ., իւղի գր. 1 ր. 50 կ., սիմինդրի պուդը 2 ռ. 10 կ.։

Մ. Սահարեանց

***

ՍՈՒԼՏԱ (Ախալքալ. գաւ.), 26 ապրիլի.—Այսօր գիւղ եկաւ գաւառիս գործակալ Երուանդ վարդապետը, յորդորեց հասարակութեան դպրոցի կիսաւարտ շէնքը այս տարի անպատճառ

գլուխ բերելու. առաջարկեց ձրի սայլեր տալ՝ Օշորայից մայիսին փայտ փոխադրելու համար, որպէսզի շէնքի ազքատիկ հաշուեկշռի վրայ նոր ծանրութիւն չդրուի։ Շատ սայլատէրեր սիրայօժար եղան։ Հայր սուրբը մեկնեց, այս գործը յանձնելով գիւղիս քահանային ի կատար ածելու։

— Ցանքսերը այստեղ վերջացած են, եղանակները անձրեւային են գնում։ Աշխատող ձեռքերի չգոյութեան պատճառով մեր դպրոցի 125 աշակերտից մնացել են միայն 20 հոգի՝ 4 բաժանմունքում։

—Երզրումի շրջանները աշխատութեան գնացող մեր գիւղացիներից շատերը վերադարձել են վարակուած և հիւանդացած. իրենց պատմելով հիւանդացել են յիշած շրջաններում գոյութիւն ունեցող դիակների գարշահոտութիւնից և դիակներից վարակուած ջրերից։

Վանիկ

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Ն Ո Ւ Է Ր Ն Ե Ր

— Կ. Հ. Բ. Ընկ. տիկ. Թովմաճեանի միջոցով Թելաւի հայ կոմիտէից ստացել է շնորհակալութեամբ յօգուտ փախստականների 200 ռ.։

— Սիմֆերոպոլի հայ կանանց կոմիտէից պ. Արշալոյս Աւագեանի միջոցով յօգուտ Մուշի կամ Երզրումի որբերի չորս կնքուած հակ զգեստ։

— Մի ոմնից յօգուտ Բարուանսարայի փախստ. որբերի, եղբ. Լ. և Ա. Ալէքսանեան Սարգսեանների տան խնճոյքին, Տ. Էդիլեանի առաջարկութեամբ ժողոված 31 ռ.։

***

Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացել է՝ Գասպար Տէր-Մարգարեանից հանգ. Ներսէս Մելիք-Փաշայեանի դագաղի վրայ պսակ գնելու փոխարէն, յօգուտ որբերի 25 ռ., Յովսէփ Մնացականեանից 5 ռ.։

***

Հ. Կենտր. Կոմիտէն շնորհակալութեամբ ստացուել է Դերբենտի Հայ Կանանց Կոմիտէից 300 ռուբլի յօգուտ հայ փախստականների որբերի։

***

Կ. Հ. Կ. Կոմիտէի լիազօր Մեսրոպ աւագ-քահանայ Մելեանը յայտնում է, որ Նովորոսիյսկում բնակուող հայերը նուիրել են 1500 պուդ ալիւր յօգուտ Տրապիզոնի սովեալների։

***

### Ճ Ի Ւ Ղ Ե Ր

Կ. Հ. Բ. Ը-թեան Ախալցխայի ճիւղը, այս Զատկական տօներին, թէ քաղաքում և թէ Ս. Փրկիչ եկեղեցում, տեղական կարօտեալների օգտին հանգանակեց մօտ 500 ռուբլի, որի մեծ մասը հենց նոյն զատկական տօներին բաժանուեց տեղական կարօտեալներին, մնացեալն էլ հետզհետէ ընկերութիւնը իւր Աղքատախնամ մասնախմբի միջոցով գործադրում է իւր նպատակին։

— Կիրակի, ապր. 24-ին, Բաղ. Վարչութեան դահլիճում տեղի ունեցաւ նոյն ընկերութեան ճիւղի անդամների՝ մարտի 27-ին կայացած ընդ. ժողովի շարունակութիւնը՝ Վարչութիւնից հերթով հեռացող անդամներ՝ Լեւոն Հէպիպեանի և հանգուցեալ Ստ. Աղնաւուրեանի փոխարէն Վարչութեան երկու անդամներ ընտրելու, նոյն ճիւղի Աղքատախնամ Մասնախմբի և Վերստուգիչ Յանձնաժողովի անդամների նոր ընտրութիւններ կատարելու։ Այդ ժողովում Վարչութեան անդամներ վերընտրուեց Լեւոն Հէպիպեանը և ընտրուեց Ստ. Ստեփանեանը։ Ճիւղի Աղքատախնամ Մասնախմբի անդամներ վերընտրուեցին՝ Լեւոն Բրթեան, Յար. Իգիթխանեան, Յակ. Շիրինեան, ընտրուեց՝ Կարապետ Գրիգորեան։ Մասնախմբի փոխ-անդամներ՝ Ալ. Դահփէճեան և Խ. Աղաջանեան։ Վերստուգիչ Յանձն. անդամներ ընտրուեցին՝ պ.պ. Յովհ. Աղանբէգեան, Վ. Յակոբջանեան և Գր. Տէր-Յովհաննիսեան։ Սրանց անձնափոխանորդներ՝ Ս. Մէհտարճեան և Յովհ. Տուլանեան։ Ճիւղը 1915 թուին ունեցել է 4087 ռ. 41 կ. մուտք, իսկ 1753 ռ. 38 կ. ելք, մնացորդ առ 1 յունուարի 1916 ամի 2334 ռ. 34 կ.։

***

Ղ ա փ ա ն ի ճ ի ւ ղ.—Տեղական ճիւղի վարչութիւնը պահում է Ղաթարի հանքերում գրադարան-ընթերցարան, որը ունի մօտ 2000 հատոր հայերէն և ռուսերէն գրքեր։ 1915 թ. ընթացքում յաճախորդներ ունեցել է 1340 հոգի, ստացուել է 16 պարբերական հայերէն և ռուսերէն թերթեր։

Տարուայ ընթացքում ճիւղը ունեցել է մուտք 855 ր. 10 կ., ծախք՝ 706 ր. 9 կ., մնացորդ առ 1-ն յունուարի 1916 թ. եղել է՝ 149 ր. 1 կ.։ Վարչութեան կազմը եղել է՝—նախագահ՝ Ս. Մելիք-Ստեփանեան, քարտուղար՝ Ի. Մելիք-Բարամեան, գանձապահ՝ Յ. Դանիէլեան, անդամներ՝ Խ. Մելքումեան և Մ. Էլչիբէկեան։

***

Զաքաթալայի ճիւղից շնորհակալութեամբ ստացուած է 100 ռուբլի, որից 50 ռուբլին յանձնելու Ազգային Բիւրօյին, իսկ մնացած 50 ռ. յօգուտ փախստականների։

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳԻՐՆԵՐ

### Հ ա յ կ ա կ ա ն Կ ե ն տ ր. Կ ո մ ի տ է ի ն

—

Բիթլիս, Տէր-Գրիգորեանից.

Այստեղի բնակչութեան մէջ տիրում է սով և հիւանդութիւններ։ Խոյից և Տուրեան լեռներից ամեն օր գալիս են քաղցից կիսամահ եղած փախստականներ։ Խնուսի շրջանին սով է սպառնում։ Անհրաժեշտ ենք գտնում տեղափոխել Ալաշկերտ և Կովկաս աշխատանքի անընդունակներին։ Անհրաժեշտ են թռուցիկ խմբեր Բիթլիսի է Խոյի ուղղութեամբ եկող փախստականներին օգնելու համար։

Յայտնում ենք նոյնպէս, որ շուտով կուղարկեն դէպի Ալաշկերտ 120 որբեր։ Անհրաժեշտ է կազմակերպել բեռնակիր տրանսպորտ՝ Խնուսից մինչև զօրաճակատ բեռ տեղափոխելու համար։ Խնդրում ենք շտապ կարգադրութիւններ։

—

Խնուս, Տէր-Մինասեանից.—Այստեղ ժողոված է 120, Գիւմգիւմ 60 և Մուշ 150 որբեր։ Կարգադրեցէք թէ ուր ուղարկենք։

—

Կովկասի Հայոց Կենտր. Կոմիտէն ստացել է հետեւեալ հեռագիրները.

Կ ո ւ մ-Կ ո ւ մ վ ա ղ ի կ ի ց Գումարեանը հեռագրում է.-«Առայժմ հաւաքել եմ 60 որբ։ Ուղարկել եմ Ջիւուր հետախոյզներ նոր որբերի յետեից»։

Աւագ քահանայ Մելեան.-«Այսօր վերադարձայ Տրապիզոնից 33 որբի և 12 հասակաւոր փախստականի հետ»։

Ղ ա ր ա ք ի լ ի ս ա յ ի ց. «Բժշկապետ Կրեսսին անփորձ հասաւ Այցելեց Ղարաքիլիսի հիւանդանոցը։ Բացում է որբանոց Ալաշկերտում։ Դթութեան քոյրերը ուղեւորուել են»։

# Քրոնիկոն

Երկուշաբթի, 25-ն ապրիլի, քաղաքային դումայում կայացաւ քաղաքագլխի և դումայի քարտուղարի ընտրութիւնը առաջիկայ քառամեակի—1916—1920 համար։

Նախ դուման որոշեց քաղաքագլխի ռոճիկը նշանակել տարեկան 8000 ռուբլու փոխարէն 12.000 ռ., իսկ քարտուղարին 2000 ռ. փոխարէն 3000 ռ. և ապա գիմեց ընտրութեան։ Քաղաքագլուխ ընտրուեց 53 ձայնով ընդդէմ 3 ձայնի Ա. Ի. Խատիսեան, իսկ քարտուղար՝ Ա. Ի. Ստաւրոնսկի։

***

Անցեալ հինգշաբթի գիշեր Լոնդոնից եկած միսսիան գլխաւորութեամբ պ. Բըկստոնի ուղևորուեց էջմիածին՝ ներկայանալու Նորին Վեհափառութեան Ամենայն Հայոց Կաթողիկոսին, իսկ այնտեղից գնալու է Ալաշկերտ, Խնուս, Մուշ և Վան։ Միսսիային ուղեկցում է պ. Ա. Սաֆրաստեան, իբր թարգման։

***

Կովկասեան Զեմստուոյի համար հրաւիրուած խորհրդակցութեան նիստերը շարունակւում են անընդհատ ամենայն օր և գիշեր՝ սկսած ապրիլի 26-ից մինչև երէկ. շաբաթ գիշեր նշանակուած էր ընդհանուր նիստ նախագահութեամբ Օգոստափառ Փոխարքայի. այդ նիստը ենթադրւում էր իբր վերջին։ Խորհրդակցութեան մէջ ստեղծուել են երկու հոսանք խոր և սկզբունքային տարբերութեամբ։ Մէկ խումբը—մեծը՝ կազմում են վրացիներն ու թուրքերը, որոնց միանում են պաշտօնեաները, իսկ փոքրամասնութիւնը կազմում են հայերը, որոնց երբեմն միանում են մէկ կամ երկու ոչ-պաշտօնեայ ռուսներ։ Մեծամասնութիւնը ցանկանում է այնպիսի զեմստուօ, որը գլխաւորապէս ծառայելու է հողատէրերին, այն է՝ 1890 թ.կանոնադրութիւնը, իսկ փոքրամասնութիւնը պաշտպանում է ռամկավարական ձևով կազմած զեմստուօ, որի մէջ գիւղացութեան մասնակցութիւնը զօրեղ լինի և փոքրամասնութեան շահերը ապահովուած։

Փոխարքայի կարգադրութեամբ ամեն մի սեկցիա ներկայացնում է մեծամասնութեան և փոքրամասնութեան պատճառաբանուած կարծիքը։

***

Պետրոգրադի հայկական համագումարի առթիւ պառակտումն է ծագել Պետրոգրադի ու Մոսկուայի կազմակերպիչ յանձնաժողովների մէջ. առաջինը, ՚ի նկատի առնելով կովկասեան հայկական խոշոր կազմակերպութիւնների յարգելի և իրաւացի առարկութիւնները համագումարի յետաձգման մասին, որոշումն է կայացրել յետաձգել, իսկ Մոսկուայի յանձնաժողովը յամառում է, չէ համաձայնում և ամենուրեք հեռագրում է պ. Ա. Մամիկոնեանցի ստորագրութեամբ, որ պատգամաւորները շտապեն Պետրոգրադ։ Ստեղծուել է մի վերին աստիճանի շփոթութիւն և ցաւալի երևոյթ։ Այս տեսակ հանգամանքներում, ՚ի հարկէ, կը վիժի համագումարը, եթէ Մոսկուայի գործիչները վերջ չը տան իրենց յամառութեան։

***

Չորեքշաբթի, մայիսի 5-ին, գիշերը, Առաջնորդարանում նորից կայացաւ խորհրդակցութիւն Պետրոգրադի համագումարի առթիւ։ Խորհրդակցութեան մասնակցում էին փախստականների գործերով զբաղուած վեց խոշոր հաստատութիւնների ներկայացուցիչները, այն է՝ Կ. Հ. Բ. Ընկերութեան, Հայկ. Կոմիտէի, Հայ Գիւղատնտեսական Ընկերութեան, Նպաստամատոյցի, Վերաշինութեան յանձնաժողովի և Միացեալ Կոմիտէի։ Այս հաստատութիւնների ներկայացուցիչները միասին որոշեցին և հեռագրեցին Պետրոգրադ Կազմակերպիչ Յանձնաժողովին, եթէ համագումարը չը յետաձգուի, այդ դէպքում հրաժարւում են մասնակցելուց, հետևապէս համագումարի որոշումները նրանց համար նշանակութիւն չեն ունենալ։ էջմիածնի Եղբայրական Կոմիտէի գլխաւոր կարգադրիչ յանձնաժողովը նոյնպէս հեռագրել է, որ նա էլ ժամանակի սղութեան պատճառաւ հրաժարւում է մասնակցելուց։

Հրաժարուել են մասնակցելուց և Ազգային Բիւրօն, Ներսիսեան դպրոցն և այլ հիմնարկութիւններ։

***

Հինգշաբթի օրը Պետրոգրադից եկաւ ներքին գործոց նախարարութեան ներկայացուցիչ պ. Ա. Ն. Նեւէրովը, որը զեմստուոյական բաժնի ու փախստականների գործերի գլխաւոր կառավարիչն է նախարարութեան, ուղեկցութեամբ գեներալ Վ. Մ. Թամամշեանի, նրա օգնական Տ. Տ. Սորէլկովի ու Կ. Հ. Բ. Ը. խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեանի այցելեց Թիֆլիսի բոլոր որբանոցները ու փախստականների համար բացած արհեստանոցները։ Պ. Նեւէրովը մեծ հետաքրքրութեամբ հարց ու փորձ էր անում որբանոցների դրութեան, կարիքների մասին և ամեն տեղ յայտնում էր իր գոհունակութիւնը վարիչներին։ Տիկ. Մ. Ս. Ծուրինեանը հիւրասիրեց իր այգում թէյով և ճաշով։ Որբանոցների սաները վարդի փունջեր էին մատուցանում պ. Նեւէրովին։ Արհեստանոցներից ամենից շատ հետաքրքրեց Գանովսկի փողոցի արհեստանոցը, ուր իշխանուհի Մ. Մ. Թումանեանը ընդունեց և բացատրութիւններ էր տալիս։ Պ. Նեւէրովը խոստացաւ նիւթական օժանդակութիւն տալ արհեստներ տարածելու և փախստականներին զբաղեցնելու համար։

***

Վանից նորից բերին 54 որբ, որոնց, Հ. Կ. Կոմիտէի որոշմամբ, տեղաւորեցին Դիլիջանի որբանոցներում։

***

Բարձրագոյն հրամանով Բագրատ եպիսկոպոս Վարդազարեանը նշանակուած է Շամախի թեմի Առաջնորդ, իսկ Վահան Տէր-Գրիգորեան վարդապետը՝ Շուշուայ թեմի կառավարիչ։

***

Թիֆլիսում վախճանուեց իշխանուհի Նունէ Բէգթաբէգեանը, որը իր կարողութիւնը—700,000 ռ. արժողութեամբ կտակել է Թիֆլիս քաղաքին՝ բաց անելու աղքատանոց կամ հիւանդանոց։ Եթէ քաղաքը 7 տարուայ ընթացքում չը կատարի կտակը, միմիայն այդ դէպքում կարողութիւնը անցնում է Կ. Հ. Բ. Ընկերութեան, որը, ՚ի հարկէ, երբէք տեղի չի ունենալ։

***

Հ. Կ. Կոմիտէի արհեստանոցում մեծ չափով վաճառւում են փախստականների ձեռքով գործած իրերը։ Արհեստանոցն ունի մեծ քանակութեամբ մանկական զգեստներ և հագուստներ։

***

## ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏՆԵՐԻ ՄԻՈՒԹԻՒՆԸ․

Մայիսի 1-ին, ցերեկուայ ժ. 11-ին Արտիստական ընկ.-թեան դահլիճում տեղի ունեցաւ Հայ գեղարուեստագէտների միութեան բացումը։ Նախագահ էր Շիրվանզադէն։ Միութեան անունից ճառ արտասանեց գեղարուեստագէտ Սուրէնեանը, որով մեկնաբանեց միութեան ծրագիրը։ Շնորհաւորման ճառեր արտասանեցին պ. պ. Շիրվանզադէ, Յով. Թումանեան, Հ. Առաքելեան, Ծայրագոյն վար. Գարեգին և ուրիշները։ Ընտրուեցին միութեան վարչական անդամներ՝ պ. պ. Լեոնեան, Թադէոսեան, Թերլեմէզեան, Շիրբաչեան և Զիոլինվ. փոխ-անդամներ՝ պ. պ. Սարեան և Խունունց։

***

Նահանգապետը հաստատել է Թիֆլիսում կօօպերատիւ ճաշարաններ բացող Ընկ. կանոնադրութիւնը։ Մայիսի 8-ին կայանալու է կօօպերատիւ ճաշարաններ բացող յանձնաժողովի նիստը, ուր կը քննուեն մի շարք կարևոր խնդիրներ կենսամթերքների վերաբերեալ։ Առաջին կօօպերատիւ ճաշարանը կը բացուի մօտ օրերս, քաղաքի յարմար մասերից մէկում։

# Արտաքին տեսութիւն

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆՆԵՐ

Համաշխարհային պատերազմի առաջին տարուայ տխուր փորձերը քառեակ համաձայնութեան պետութիւններին այն համոզմանը բերին, որ մինչև նրանք իրար հետ սերտ կապերով չմիանան և մասնաւորապէս իրենց ռազմական գործողութիւնները կատարելիս ներդաշնակութիւն չհաստատեն՝ անկարելի է լինելու յաղթահարել միջին եւրոպական պետութիւններին, որոնց զինակցութիւնը կուռ է մինչ այն աստիճան, որ կարծէք իբրև մի պետութիւն միաձուլուած լինին։ Այս գիտակցութիւնը սկզբում ծայր առաւ Անգլիայում ու Ֆրանսիայում և կարճ ժամանակի ընթացքում գործնական քայլերի վերածուեց։ Անցեալ տարուայ ընթացքում այս երկրների քաղաքական և զինուորական գործիչները փոխադարձ այցելութիւններով և պատերազմի կարիքները տեղն ու տեղը ուսումնասիրելով՝ կարողացան միահամուռ գործունէութեան այնպիսի ծրագիր մշակել, որ ֆրանսական և անգլիական ռազմաճակատները փաստօրէն վերածուեցին մի ընդհանուր ճակատի։ Եւ եթէ գերմանական զօրքերը այսօր հալւում են Վերդէնի ամրութիւնների տակ—գլխաւոր պատճառներից մէկն էլ անգլո-ֆրանսական զօրքերի մէջ հաստատուած գործողութիւնների միութիւնն է։

Սոյն տարուայ սկզբին Պարիզի զինուորական համագումարում (կոնֆերանսում) որոշուեց անգլո-ֆրանսական աղերսը (կոնտակտ) տարածել բոլոր դաշնակից պետութեանց մէջ։ Սակայն այս ծրագիրը Ռուսաստանի հասարակական կարծիքի կողմից ըստ արժանւոյն չէր գնահատւում։ Ռազմաճակատների հեռաւորութիւնը մի կողմից, սեփական կորուստների ծանրութեան գիտակցութիւնը երկրորդ կողմից և դաշնակիցների կատարած գործի մասին լրիւ գաղափար չունենալը երրորդ կողմից ռուս հասարակական մանաւանդ աջակողմեան շրջաններում բաւական տարտամ տրամադրութիւն էին առաջ բերել, ուստի և նրանք որոշ վերապահութեամբ էին մօտենում համագումարի վճիռներին։ Այս տրամադրութիւնը ցրելու և ռուս հասարակութիւնը, մանաւանդ նրա գերիշխող տարրերին, ընդհանուր գործին սերտօրէն կապելու համար՝ անգլիական և ֆրանսական կառավարութիւնները, նրանց հետևելով նաև իտալականը, մօտ երկու ամիս առաջ հրաւէր կարդացին ռուս հասարակութեան ներկայացուցիչներին՝ յանձինս Պետական Դումայի անդամների՝ այցելել արևմտեան դաշնակիցներին և անձամբ վերահաստ լինել թէ վերջինների կատարած գործին և թէ պատերազմի կարիքներին։

Այս հրաւէրին արձագանգ տուաւ Պետական Դուման կազմելով զանազան ֆրակցիաների ներկայացուցիչների պարլամենտական մի խումբ, որ անցեալ շաբթու վերջին մեկնեց Անգլիա։

Ռուս պարլամենտական խմբակը ներկայումս Անգլիայի մի ծայրից միւսն է թռչում՝ դիտելով նրա նաւակառուցարանները, զինագործարանները և ընդհանրապէս պատերազմական գործի կազմակերպութիւնը։ Ըստ հեռագրական տեղեկութիւնների՝ Պետական Դումայի անդամները նոյնքան հիացած են այդ կազմակերպութեամբ և նոյնքան ընկճուած Անգլիայի կատարած գործի մեծութեամբ, որքան է նրանցից առաջ Անգլիա այցի գնացած ռուս լրագրողները։

Ինչպէս նման այցութիւնները, նոյնպէս և այս այցելութիւնը առանց քաղաքական ցոյցերի, խնջոյքների (բանկէտների) և բաժակաճառերի չէ անցել հարկաւ։ Եղած ճառերից նշանաւոր է Լոնդոնի նոր Թանգարանում կայացած խնջոյքին Ասքուիթի արտասանած ճառը. «...Մենք մոռացել և ջնջել ենք անցեալի բոլոր թիւրիմացութիւնները... Գերմանիան գիտէ, որ երբ մենք միացել ենք, պէտք է յաղթենք։ Մենք էլ գիտենք այդ։ Այս գիտակցութեամբ մենք պէտք է կանգնենք կողք-կողքի, մինչև որ չխորտակենք մեզ դիմադրող ուժերը և խաղաղ աշխատանքով ու փոխադարձ համաձայնութեամբ չվերստեղծենք եւրոպական քաղաքակրթութիւնը...» Այսպիսի արտայայտութիւններից է կազմուած Անգլիայի առաջին պետական մարդու ամբողջ ճառը։

Անգլիայում իրենց գործը վերջացնելուց յետոյ ռուս պատգամաւորները պէտք է այցի գնան նախ Ֆրանսիա և ապա Իտալիա։ Չենք կասկածում, որ այս այցելութիւնները պէտք է տոգորեն ռուս պատգամաւորներին դաշնակիցների կատարած գործի մեծութեամբ և նրանց կորով ու պատրաստակամութիւն ներշնչեն աշխատելու, որ Ռուսաստանն էլ իր բոլոր ուժերը լարի այս չարաղէտ պատերազմը ցանկալի վախճանին հասցնելու համար։

Միևնոյն օրերին, երբ ռուս պատգամաւորները այցի են գնացել արևմտեան դաշնակիցներին՝ Ֆրանսիոյ կառավարութեան երկու անդամը՝ Վիվիանի և Ալբերտ Թոմ՝ այցի են եկել Ռուսաստան կրկնակի նպատակով. նախ՝ ծանօթանալու այստեղ պատերազմական գործի կազմակերպութեանը և ապա՝ ծանօթացնելու ռուս հասարակութեան լայն շրջաններին Ֆրանսիայի և արևմտեան միւս դաշնակիցների թափած ջանքերին այս պատերազմի ընթացքում։ Լրագրական տեղեկութիւններին նայելով, այս հիւրերի ընդունելութիւնը Մոսկուայում և Պետրոգրադում բաւական սրտագին է եղել։ Որ նրանց հաղորդագրութիւնները արևմտեան դաշնակիցների կատարած գործի մասին խորին գոհունակութեան զգացմունքով է ընդունուել ռուս շրջաններում—այդ շատ հասկանալի ենք համարում մենք. բայց թէ նրանք ինչ տպաւորութիւն պէտք է տանեն Ռուսաստանից իրենց հետ—այդ դժուարանում ենք ասել...

Վերջապէս մի երրորդ այց էլ է տեղի ունեցել այս շաբաթ. այդ Սերբիայի մինիստր-նախագահ Պաշիչի այցելութիւնն է Ռուսաստանին։ Ներկայ հանգամանքներում այս այցը հազիւ թէ որ և է նեղ քաղաքական ծրագրի հետ կապուած լինի։ Ամենայն հաւանականութեամբ Պաշիչի նպատակն է հրաւիրել Ռուսաստանում սլաւոնական եղբայրութեան զգացմունքը, որ նոյնքան ուժեղ էր այստեղ պատերազմի սկզբում, որքան և թոյլ ներկայումս։ Իբրև հաստատութիւն այս կարծիքի կարող է ծառայել այն հանգամանքը, որ նախ՝ Պաշիչն աւելի սերտ յարաբերութեան մէջ է մտնում ռուս հասարակական շրջանների հետ, քան թէ քաղաքական այցելուները սովորաբար իրենց թոյլ են տալիս և ապա՝ որ նա չէ սահմանափակւում Պետրոգրադով ու Մոսկուայով, այլ շրջագայում է Ռուսաստանի ներսերը, մինչև Կիև ու Օդեսսա։ Ամեն տեղ, ուր գնում է Պաշիչը, տեղի են ունենում խնջոյքներ և քաղաքային խորհուրդների արտակարգ նիստեր, որոնց ընթացքում վեր են հանւում ռուս ժողովրդի համակրանքն ու կարեկցութիւնը եղբայրակից սերբ ժողովրդի հանդէպ։ Այժմեան հանգամանքներում Սերբիան Ռուսաստանից առանձին ակընկալութիւններ չունի։ Այդ ակընկալութիւնը վերջին հաշուեհարդարի ժամանակ կը լինեն։ Հարկաւոր է միայն, որ մինչև այդ օրը Սերբիան չմոռացուի ռուս ժողովրդի կողմից, որպէս զի շահագրգիռ կառավարութիւնները մի ուժեղ նեցուկ ունենան Սերբիայի բաղդը լաւագոյնս տնօրինելու համար։ Այս տեսակէտից Պաշիչի այցելութիւնը պէտք է յաջողուած համարել, եթէ աչքի առաջ ունենանք նրան ցոյց տուած ջերմ ընդունելութիւնը։

Ա. Ջամալեան

---

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

### ՕՐ. ԷՄԻԼԻ ՌԱԲԻՆՍՈՆ

Մեր առաջին էջի վրայ այսօր մենք հաճոյքով տալիս ենք օր. Էմիլի Ռաբինսոնի լուսանկարը։ Գուցէ մեր ընթերցողներին

արդէն ծանօթ է այդ եռանդուն և անխոնջ անգլուհու ծառայութիւնները ի նպաստ հայ փախստականներին։

Օր. Ռոբինսոն դուստրն է Սըր Ջոն Ռոբինսոնի, նախկին խմբագրապետ անգլ. յայտնի «Daily News» օրաթերթի։ Նրա հանդուցեալ հայրը սկսեալ 1890 թուականից, մանաւանդ 1895—6 թուականներին մղել է բուռն պայքար ի նպաստ հայկական դատին։ Ռոբինսոնն էլ ժառանգելով իր հօր աւանդութիւնները, առանձնապէս 1913-ից ի վեր ամբողջովին նուիրուել է հայկական հարցին։

Նա 1913-ի ձմրան հիմնեց «The Armenian Societe» (հայ ընկերութիւն) զուտ անգլիացիներից բաղկացած մի ընկերութիւն, որի նպատակն էր ուսումնասիրել հայ պատմութիւնը, գրականութիւնն և գեղարուեստը, ինչպէս նաև գրքերով և դասախօսութիւններով լուսաւորել անգլ. ազգը Հայաստանի վերաբերմամբ։ Պատերազմի բռնկումից առաջ նա հրատարակեց «The truth abont Armenia» (Հայաստանի իսկական դրութիւնը) վերնագրով մի տետրակ, ուր նա առանց բառազարդութեան ներկայացնում էր հայերի դրութիւնը և յիշեցնում էր Անգլիայի պատասխանատուութիւնը հանդէպ տաճկահայերին։

Իսկ երբ Թիւրքիան սկսեց պատերազմը՝ օր. Ռոբինսոնը «Հայ ընկերութեան» քարտուղար պր. Կատսոն Բոնի և ընկերութեան անդամ անգլուհիների աջակցութեամբ հիմնեց «Հայկական Կարմիր Խաչի և փախստականների ֆոնդը», որ մինչև այժմ հաւաքել է մեծ գումարներ ի նպաստ հայ կամաւորների և փախստականների։ Որպէս մօտիկ ծանօթ նրա գործունէութեան, ես զարմանքով դիտել եմ նրա յարատև և անվհատ ջանքերը ի նպաստ մեր դատի և ժողովրդի։ Եղել են օրեր, երբ նա առաւօտից մինչև կէս գիշեր անդադար գրել և գործել է «Հայկական Կարմիր Խաչի» օգտին։ Նա կատարել է և դեռ շարունակում է կատարել անվերջ դիմումներ անգլ. մամուլին և հասարակութեան, ներկայացնելով հայերի ներկայ դժբախտ վիճակը՝ պահանջում է օգնութիւն։ Որպէս մի անհատ գործիչ, անգնահատելի է մատուցած ծառայութիւնները մեզ հայերիս։ Դեռ անցեալ փետրուարին նա գրել է մի փաստալից յօդուած անգլիական ամենատարածուած ամսագիր «Khaki»-ում, ուր նա յուզուած, բայց անկուն շեշտում է հայ կենսունակութիւնը և հայ մտքի ստեղծագործական կարողութիւնը։ Մօտիկ ապագան թերևս ցոյց տայ նրա լռիկ գործունէութեան արդիւնքը։

Պատիւ և յարգանք այդ ազնիւ և անձնուէր անգլուհուն։

Ա. Ս.

## ՀԱՅԵՐՈՒ ՀԱԼԱԾԱՆՔԸ*)

### ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ—ԹՐՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔ

### IV

«Հայկական տարբեր քաղաքներու մէջ բանտարկուած հայերը, որոնք մոռացութեան էին տրուած, կախուեցան։ Միայն մէկ ամսուայ միջոցին մի քանի տասնեակ հայեր կախուեցան Կեսարիոյ մէջ։ Շատ վայրերու մէջ հայ ժողովուրդը իր կեանքը փրկելու համար ուզեց մահմեդականութիւն ընդունել, բայց այն ընդունելութիւնը չը գտաւ, ինչ որ եղաւ մեծ ջարդերու ժամանակ։ Սուազի մէջ հետևեալ առաջարկը եղաւ. որոնք կուզէին իսլամանալ, պէտք է իրենց երեխաները՝ մինչև տասներկու տարեկան հասակը՝ տան կառավարութեան, որ յանձն կառնէ տեղաւորել որբանոցներու մէջ, իսկ իրենք պէտք է երթան բնակին այնտեղ, ուր կառավարութիւնը կորոշէ։

«Խարբերդի մէջ տղամարդկանց կրօնափոխութիւնը չընդունուեցաւ, իսկ կանանց պայման դրուեցաւ, որ մի թուրք պարտաւոր է իւրաքանչիւր կրօնափոխին իրեն կնութեան առնել։ Շատ հայ կանայք նախընտրեցին իրենց ծծկերներու հետ նետուել Եփրատը, կամ անձնասպան եղան իրենց տուներուն մէջ։ Եփրատը և Տիգրիսը դարձան հազարաւոր հայերու գերեզմանը։

«Սև ծովու քաղաքներու մէջ, ինչպէս Տրապիզոն, Կիրասոն, Սամսոն և այլն, որոնք մահմեդականութիւն ընդունեցին, ղրկուեցան կառավարութեան կողմէ զուտ թրքաբնակ քաղաքներ։ Շապէն-Գարահիսարը, որ դիմադրեց դինաթափութեան և գաղթին, ռմբակոծուեց և քաղաքի ու շրջակայքի հայ բնակչութիւնը, ինչպէս և Եպիսկոպոսը, կոտորուեցին անխղճօրէն։

«Վերջապէս Սամսոնէն մինչև Տիգրանակերտ, Սղերդ, այժմ ոչ մի հայ գոյութիւն չունի։ Մեծ մասը կոտորուած է, փոքր մաս մահմեդականացած և փոքր մաս տեղահանուած։

«Պատմութիւնը երբէք չէ արձանագրած, երբէք չի խօսած այսպիսի հեկատոմբներու մասին՝ մարդ ստիպուած է հաւատալ, որ Սուլթան Համիդի ժամանակ հայերը երջանիկ էին։ Անանիա վարդ. Հազարապետեանը, Բաբերդի առաջնորդը, մայիս ամսուն քաղաքէն մեկնեցաւ՝ աքսորավայրը գնալու, բայց հազիւ քաղաքէն քիչ հեռացած էր, որ կախուեցաւ. նոյնպէս Խարբերդու առաջնորդ Պսակ վարդապետ Տէր Խորէնեանը, քաղաքէն քիչ հեռու, անգթօրէն սպանուեցաւ։ Միւս առաջնորդներէն ոչ մէկ լուր չկայ. աւելորդ է խօսել չարչարուած ու սպանուած վարդապետներու մասին։ Երբ ժողովուրդը տեղահանուեր է, եկեղեցիները թալանուել և վերածուել են մզկիթներու, ախոռներու և այլն։ Սկսան ծախել Պոլսոյ մէջ եկեղեցական սպասներ և գոյքեր, նոյնպէս Թուրքերը սկսան Պոլիս բերել դժբախտ հայ մայրերու երեխաները։

«Կիլիկիոյ ժողովուրդը աքսորուած էր Հալէպի նահանգը կամ Դամասկոսի, ուր անպայման անօթութենէն կը փչանայ։ Կառավարութիւնը չուզեց պահել, մինչ իսկ Հալէպի և Ուրֆայի պատիկ հայ գաղութները, որպէս զի նրանք չը կարողանան օգնել իրենց դժբախտ եղբայրներուն, որոնք քշուած էին դէպի հարաւ։

«Անպայման կառավարութեան ծրագիրն էր, մի անգամ ը միշտ վերջ տալ հայկական հարցին, պարպել հայ ժողովուրդը նահանգներէն և Կիլիկիայէն։ Դժբաղդաբար այս ծրագիրը ա ընդարձակ է, որ ուզում է հայ ժողովուրդը ջնջել ամբողջ Թ քիոյ մէջ։ Եւ այդ ծրագիրը արդէն կը գործադրուի Պոլսոյ շ նին մէջ ալ։ Իզմիրի, Պրուսայի, Ատաբազարի, Կէյվէյթ, Ար շրջաններու հայութեան մեծ մասը ուժով քշած են Միջագե

«Պոլսոյ ժողովուրդը մեծ սարսափով բռնուած, կսպասէ դատապարտման գործադրութեանը։ Ջերբակալութիւններն ա սահման են, և ձերբակալուածներն անմիջապէս կը հեռացուին մ րաքաղաքէն. մեծ մասը անպայման չպիտի կարողանան ազա իրենց կեանքը։ Ասոնք գաւառական յայտնի վաճառականներ հաստատուած Պոլիս, որ առ ժամանակ հեռացուած են...»

Ահաւասիկ մի քանի հատուած մի ուրիշ տեղեկագրէ, աւելի անհատական է, որը աւելի խղճահարուած ու դժգոհ գ ունի։ Սրանք երկու հիւանդապահուհիներ են, որոնք կը պատկ նեն գերմանական Կարմիր-Խաչին և գտնուել են Կարին 191 հոկտեմբերէն մինչև 1915 ապրիլը, և ծառայել են Գերմանակ Զինուորական-միսիայի (Deutsche-Militär mission) մէ Ասոնց մէկը օրիորդ Flora A. W.dal-yarlsberg-ն է, որ պատկանի նորվէկական շատ ծանօթ ընտանիքի մը[1]։

«... 1915-ի մարտ ամսին մենք լսեցինք հայ բժշկէ մը վերջը մեռաւ տիֆէն, թէ կառավարութիւնը կը պատրաստէ ջարդ մը...։

Էրզրումի գերմանական կոնսուլի միջոցաւ, որը նոյնպ կը վայելէր հայոց վստահութիւնը, հրաւիրուեցանք Երզնկա Կարմիր-Խաչի կողմէ այնտեղ աշխատելու եօթը շաբաթ։

«...Այն ժամանակ, մի քանի օր ժամանակ տուին Երզնկա ժողովուրդին իր գոյքերը ծախելու համար, որը և տեղի ունեց

*) Տես «Համբաւաբեր» № 1։

[1]) Այս օրիորդի տեղեկագիրը ամբողջովին տպուած է մի ւում լոյս տեսած մի գրքոյկում, որ հետևեալ անունը կը Ouelques dacuments sur le sort des armeniens en 1915։

հուան լրջութիւնը կար. ոչ մի աղմուկ չըկար, շատ կարգով կը քալէին, երեխաները ընդհանրապէս եզան սայլերու վրայ կանցնէին առաջ, ոմանք մեզ բարևելով... Ծեր կին մը վար իջուցին իր էշէն, և նա այլևս չէր կարող քայլել։ Սպանեցին տեղւոյն վրայ. մեր սրտերը սառած էին։

«Ժանդարմը, որ մեզ կ'ընկերակցէր, պատմեց մեզ, որ Քամախ-Պողազ առաջնորդելու համար ինքն ալ ընկերակցել է 3000 կանանց և երեխաներու, որոնք Մամախաթունէն էին մեկնէր, կ'ըսէր. «Բոլորը հեռու են, բոլորը մեռած»։

«Անգամ մը մենք հանդիպեցանք մեծ թուով աշխատողներու ճանապարհներու վրայ, որ մինչ այդ իրենց աշխատանքը խաղաղ կատարած էին։ Անոնց բաժներ էին երեք խումբի—իսլամ, յոյն, հայ։ Այս վերջիններու մօտ դրուած էին մէկ քանի զինուորական։ Մեր երիտասարդ Հասանը պոռաց. «Այդ բոլորին պիտի մորթենք։» Բարձրանալով բլուր մը, մենք շարունակեցինք մեր ճանապարհը։ Այդ ժամանակ մեր կառապանը ցոյց տուաւ ձորի ուղղութեամբ, և մենք տեսանք որ հայ բանուորները, թուով մօտ չորս հարիւր հոգի, մեծ ճամբայէն դուրս հանեցին և կանգնեցուցին հողի շերտի մը առաջ կարգով։ Ինչ որ պատահեց մենք գիտենք։

«...Ուրիշ մի տեղ, մինչ ժանդարմները հրացանազարկ կ'ընէին, թուրք բանուորները մնացածը կը լրացունէին դանակներով և քարերով... Սեպաստիայէն տասներկու ժամ առաջ, մենք գիշերեցինք կառավարական շէնքի մը մէջ։ Մեր դուան առաջ նըստած ժանդարմը երկար ժամանակ առանց դադրելու կ'երգէր, *Երմէնիլէր հէփ քէսթիլէր* («Բոլոր հայերը մորթեցին») Մեր քովի սենեակը հեռախօսով կը խօսէին։ Մենք հասկցանք, որ հրամաններ կ'ուգային հայերը ձերբակալելու ձևի մասին։ Ընդհանրապէս կը խօսէին Յովհաննէս անունով մէկի մասին, որ մինչ այդ ժամանակ չէին կարողացեր գտնել։

«Գիշեր մը անցուցինք հայու մը տունը, ուր կանայք լացած էին իրենց ընտանիքին տղամարդկանց մահուան դատապարտուելու մասին։ Սրտաճմլիկ էր լսել ցաւի աղաղակները։ Պարապ տեղը մենք փորձեցինք իրենց խօսել։ «Զե՞ր կարող ձեր կայսրը մեզ օգնութեան հասնել», կաղաղակէին անոնք։ Ժանդարմը կ'ըսէր. «Մենք նախ կ'սպաննենք հայերը և ապա քուրդերը։» Անշուշտ պիտի աւելցնել. «Եւ յետոյ օտարականները»։ Մեր յոյն կառապանը ստիպուած էր լսել մէկից աւելի անգամներ անխիղճ կատակներ. «Նայիր, փոսին մէջ յոյներու գլխակներ ալ կան։»

«Վերջապէս մենք հասանք Սեբաստիա...։»

Տրդատ

## ԵՐԿՈՒ ԿԱՐԵՒՈՐ ՎԱՒԵՐԱԳԻՐ ՏԱՃԿԱՀԱՅՈՑ ԿՈՏՈՐԱԾՆԵՐԻ

### I

### Թուրք կառավարութեան

### ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

#### ՏՐԱՊԻԶՈՆԻ ՀԱՅԵՐԻՆ

—

Բաւական տարիներէ ի վեր, Օսմանեան բնակչութեան մասը կազմող մեր հայ հայրենակիցները, արտաքին թելադրութիւններու հետևելով, վնասակար և խաղաղութիւնը վրդովող գաղափարներ կը սնուցանեն և այս կերպով թէ իրենց հանգստութիւնը և թէ օսմանեան հայրենիքին իրենց միւս հայրենակիցներուն գոյութիւնն ու հանգստութիւնը կը խանգարեն և արիւնհեղութեանց պատճառ ըլլալ կը համարձակին։ Նոյնիսկ հայ ժողովրդին գոյութեանը և այժմ մեր կառավարութեանը հետ պատերազմող թշնամուն աջակցելու կը յանդգնին։ Ուստի թէ երկրին պաշտպանութիւնն և խաղաղութիւնը պահպանելու և թէ հայ ժողովրդին գոյութիւնն ապահովելու համար մեր կառավարութիւնն արտակարգ միջոցներ և զոհողութիւններ ստանձնելով, մինչև պատերազմին վախճանը բնակելու համար ներքին գաւառներու մէջ կառավարութեան նշանակած վայրերը փոխադրել որոշած է և բոլոր օսմանցիներուն վճռականապէս հետագայ յայտարարութիւնը կ'ընէ, որուն պարտաւոր են կէտառկէտ հնազանդիլ բոլոր օսմանցիները։

1. Ներկայ յայտարարութեանս թուականէն հինգ օր վերջը առհասարակ բոլոր հայերը, ի բացառեալ հիւանդները, թաղերու և գիւղերու բաժանումներով պարտաւոր են մեկնել ժանդարմներու պաշտպանութեան տակ։

2. Մեկնելու ժամանակ իրենց շարժուն գոյքերէն միայն առնել թոյլատրուած են, բայց աւելորդ գոյքեր, անշարժ կալուածներ ծախել կամ ուրիշներու յանձնել արգելուած է։ Որովհետև տեղափոխութիւնը ժամանակաւոր ըլլալուն պատճառաւ, այն բոլոր գոյքերը, որ պիտի թողուին՝ պիտի կապուին և հակեր շինուած հաստատուն շէնքերու մէջ պիտի ամփոփուին և անշարժ կալուածներով միասին պիտի պահպանուին ու երբ վերադառնան՝ դարձեալ նոյնութեամբ իրենց պիտի վերադարձուին։ Ամեն անոնք, որ հակառակ այս հրամանին, գնեն, ծախեն և պահեն՝ զինուորական ատեանի առաջ պիտի դրկուին։ Միայն այն ամեն իրեղէնները, որ բանակին պիտոյքը գոհացնելու բնոյթ ունին՝ կարելի է յօժար կամքով ծախել կառավարութեան։

3. Ճամբորդութեան միջոցին հանգստութեան համար պանդոկներ և մեծ շէնքեր պատրաստուած են և ոևէ յարձակումի ենթակայ չ'ըլլալու և ողջ-առողջ իրենց առժամանակեայ բնակավայրը հասնելու համար ամեն կերպ կարգադրութիւններ կատարուած են։

4. Հայ ժողովուրդէն մէկին կամ մէկ քանիներուն վրայ յարձակում ընողներուն դէմ պահակներուն կողմէ զէնք պիտի գործածուի և ողջ ձերբակալելով զինուորական ատեանին առջև պիտի դատուի և գլխատուի։ Հայերուն երևակայական գաղափարներով առաջնորդելուն հետևանքն եղող այս կարգադրութիւնը ուրիշ ոևէ ժողովուրդի հետ կապ կամ առնչութիւն չունենալով՝ բնակչութեան միւս տարրերը ոևէ կերպով չպիտի միջամտեն այս գործին։

5) Հայերը պարտ են հնազանդիլ կառավարութեան այս հրամանին. եթէ ոև է հայ ոստիկան զինուորներուն վրայ զէնք գործածէ՝ անմիջապէս ժանդարմները զէնքի պիտի դիմեն և զէնք գործածողները միայն մեռեալ ձեռք պիտի ձգեն։ Դարձեալ, կառավարութեան հրամանին չը հնազանդող, տեղափոխութենէն խուսափող և այս ու այն կողմ պահուըտողները, պահողները, կերակրողները և անոնց պահուըլն ապահովողները կախաղան բարձրացնելու համար զինուորական ատեանին առջև պիտի դրկուին

6. Հայերը զէնք կամ ռումբ կրելու արտօնուած չըլլալով՝ իրենց բնակարաններու մէջ կամ դուրսը պահած ամեն տեսակ զէնք, ատրճանակ, ռումբ և երկսայրի սուրեր պէտք է կառավարութեան յանձնեն։ Այս տեսակ զէնքերու մէկ մասին վրայ կառավարութեան տեղեկութիւն տրուած ըլլալով՝ ամեն անոնք որ նախապէս ծածկելու գաղափարով, չեն յանձներ և յետոյ կառավարութեան միջոցաւ երևան կը հանուին՝ խիստ պատասխանատուութեան տակ պիտի մնան և պատժուին։

7. Ճանապարհին Հայերը կողոպտելու, սպաննելու և այլ այլ նպատակներու համար անոնց վրայ յարձակողներուն դէմ ժանդարմաները ու զինուորները պարտաւոր են և արտօնուած զէնք գործածելու այդպիսի անձնաւորութիւնները սպանել։

8. Օսմանեան պանքային պարտք ունեցողները իրենց պարտքին փոխարէն կրնան ապրանքներ յանձնել պանքային պահեստանոցին, միայն կառավարութիւնն իրաւունք ունի գնել զինուորական պէտոյից գործածութեան համար այդ բոլոր ապրանքները, պանքային վճարելով պարտուց գումարը, որուն փոխարէն ապրանքներ յանձնուած են։ Ուրիշ անձանց եղած պարտքին փոխարէն կարելի է ապրանքներ յանձնել. միայն թէ պարտուց իսկութ

պէտք է կառավարութեան միջոցով հաստատուի. այս նպատակին համար վաճառականին վաւերացուած տետրակները առաջնակարգ փաստեր կը կազմեն։

9. Մեծ և փոքր կենդանիներ, զորս փոխադրել կարելի չէ, կառավարութիւնը պիտի գնէ։

10. Ճանապարհին վրայ գտնուող գիւղերու, քաղաքներու կառավարութիւններու և նահանգներու պաշտօնեաները կարելի եղած օգնութիւնը պիտի մատուցանեն Հայ ժողովուրդին.

*13 յունիսի 1915 թ.*
*Տրապիզոն*

II

## Միութեան եւ Յառաջադիմութեան Կոմիտէի Տրապիզոնի պաշտօնական «Մէշվերէթ» թուրք թերթի յօդուած մը։

### ՌՈՒՍԱԿԱՆ ՎԱՅՐԱԳՈՒԹԻՒՆՆԵՐ

ՅԱԽԱԼԻ ԷՋԵՐ

—

Յոյներու և Հայերու առաջարկութեամբ Երբէնս գիւղախումբին վրայ յարձակուող Ռուսները, նոյն գիւղին բնակիչներէն Իմամօղլուներու զաւակներէն Օսման Աղան կը ձերբակալեն և իրենց կերակուր պատրաստելու համար կ'առաջարկեն իր կինը բերել և մերժելու պարագային կտրիպեն։ Խեղճը ծայրայեղ բռնութեան և տանջանքի տակ կինը պահած տեղէն ակամայ կը հանէ։ Պատուի թշնամի այս վայրի գազանները կուզեն Օսմանը ճամբել հրամանատարէն կանչուած ես ըսելով։ Թշուառ Օսմանը պատահելիքը գուշակած ըլլալով չը հնազանդիր, որուն վրայ կը յարձակին և Թեհրը կապելէ յետոյ իր աչքին առաջ կնոջ պատիւը կը բռնաբարեն և ի վերջոյ ամենազարհուրելի կերպով, այսինքն մարմինը կտոր-կտոր բաժնելով կ'սպանեն։

Կարմիր Դրօշակի ընկերներէն։

Խ ր ա գ ր ո ւ թ ի ւ ն ս այս վաւերագիրը շնորհակալութեամբ ստացաւ Արժանապատիւ Տէր-Մեսրոպ քահ. Մելեանից, որ Բաթումից Տրապիզոն էր մեկնել փախստականների օգնութեան գործով։ Վաւերագիրս թարգմանութիւն է Թուրքերէն բնագրի, որ Տէր-Մեսրոպը ձեռք բերելով Թուրքերէնի տեղեակ մի տաճկահայի թարգմանել է տուել, որ և անփոփոխ հրատարակութեան ենք տալիս։ Առաջին վաւերագրի ապահովացումների կեղծիքը ոչ միայն տեղահանութեան անունով անլուր ջարդերն են ապացուցանում, այլև Տրապիզոնի Թուրք պ ա շ տ օ ն ա կ ա ն թերթում հրատարակուած. երկրորդ վաւերագիրը, ուր Թ ո ւ ր ք ը խօսում է հայի և ռուսի վայրագութեանց մասին, շատ հասկանալի է Թուրք ու քուրդ ամբոխի խժդժութիւնները և կոտորածները քաջալերելու։

---

# Գ ե ղ ա ր ո ւ ե ս տ

## «ՊԱՏԵՐԱԶՄԸ» ՇԱՐՔԻՑ

*Զինուորների երգը*

Երբ մեզ՝ տառապող Երկիրն է կանչում,
Արդէն ոչ մի խոչ չը կայ մեզ համար.
Մեր ականջներին մի ձայն է հնչում.—
„Զարկէք թշնամուն շարքերով յամառ..

Մեզ համար բան չեն՝ սարեր ձիւնապատ,
Լեռնագագաթի խօլ բուք ու բորան.
Անցնում ենք բոլոր՝ արծուի պէս ազատ,
Թօնի տակ զարնում նիրհի թաց վրան։

Եւ երբ թշնամու հետքը մենք գտանք,
Է՛լ նա մեր ձեռքից փրկութիւն չունի.—
Նրրա հետքերով մինչև վե՛րջ կ'երթանք
Եւ կը կործանենք ոյժը կենդանի։

Մենք մի ուխտ ունենք մեր սրտի խորքում.
Աններկուն պահել մեր ըմբոստ ոգին.—
Եւ՝ դժուար ճամբով, մենք՝ յաղթ, անլքում,
Մինչ մահ կը դիմենք մեր նպատակին...

*Եալթա.* *Սիմ. Բարխեան։*

---

# Գ ր ա կ ա ն ո ւ թ ի ւ ն

## Ս Ե Ր Վ Ա Ն Տ Է Ս*)

*(1547—1616—1916)*

—

Դոն-Քիշոտը սոցիալական ռոմանտիզմի անդրանիկ ներկայացուցիչն է։ Ողբերգական է այդ մարդու վիճակը, որովհետև նա գիտակցօրէն իր ուժերը գերազանցող առաքելութիւն է ստանձնել։ Իրօք, «տխուր դէմքերից», ռոմանտիկներից «ամենատարօրինակը» ա մ ե ն ա դ ր ա մ ա տ ի կ ն է դա, որի ե ր և ա կ ա յ ո ւ թ ի ւ ն ն ու կ ա ր ո ղ ո ւ թ ի ւ ն ը ճակատագրականօրէն երբէք չեն համապատասխանում իրար։ Նա իրեն կոչուած, ամենակարող է զգում աշխարհի բարոյական օրէնքները պահպանելու մի ժամանակ, երբ ամենակարող մետաղն ու ոստիկանութիւնը, Ս. Հերմանդատն էին ղեկավարում աշխարհը։

— Փ՞ող, հարցնում է նա ապշած, երբ խորհուրդ են տալիս նրան իր հետ փող վերցնելու.—ես ոչ մի տեղ չեմ կ ա ր դ ա ց ե լ, որ թափառող ասպետները իրենց հետ վերցնէին ա յ դ ա տ ե լ ի մետաղը։

—Լռիր, Երբ ես տեսել, որ թափառող ասպետին համարձակուէին դատի ենթարկել, պատասխանում է ոստիկանութեամբ իրեն սպառնացող Սանխօ-Պանչոյին։

Ահա այս բնորոշ դատողութիւններով իր Ռոսինանդ ձին հեծած գնում է ճնշուածներին ու հալածուածներին պաշտպանելու համար։ Մեր ասպետն ես ունի իր «տիրուհին», պաշտամունքի առարկան։ Գեղջկուհի Ալտոնսին նա իշխանուհի Դուլցինէա է վերակոչում և որկրամոլ, հաստափոր, վախկոտ ու ստախօս Սանխօ-Պանչոյին իրեն զինակիր ընտրում, սրան մի իշխանութիւն խոստանալով։ Իր Դուլցինէայի սիրով հարբած և թշուառներին օգնելու պարտականութեամբ տոգորուած ասպետը թշնամիներ-արկածներ է որոնում։ Եւ բնականաբար այդ խելօք խենթի երևակայութիւնը ամեն տեղ նրան երևակայական թշնամիներ ու վտանգներ է ցոյց տալիս։ Հողմաղացները նրան հսկաներ են թւում, քարուանսարաները՝ խորհրդաւոր դղեակներ, խեղճ վարդապետներն ու սափրիչները՝ կատաղի թշնամիներ։ Բանի որ նշանը սխալ է ընտրած՝ վրիպում են նրա բոլոր հարուածները։ Բայց ոչինչ. նա չի վհատում. մի նախանձելի հ ա ւ ա տ ո վ և լ ա ւ ա տ ե ս ո ւ թ ե ա մ բ նա ամեն ինչ ի բ ա ր ի ն է մեկնում. —պատրանքը, վրիպումը անհրաժեշտ են եղել. այդպէս է կամեցել նախախնամութիւնը նրան հերոսացնելու համար։

Բայց դառն է այդ մարդու ճակատագիրը. նա վնասում է ոչ միայն իրեն, այլ և նրանց, որոնց օգնել էր կամենում։ Իրականութեան դառն հեգնանքով վերջիններիս դրութիւնը աւելի է ծանրանում, վատթարանում նրա միջնորդութեամբ ու պաշտպանութեամբ։ Եւ ճնշուածները խնդրում են նրան, ի սէր Աստուծոյ,

*) Տես «Համբաւաբեր» № 18։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ *)

Նոր-Բայազէդ, 1916 թ 15 ապրիլ

Կարդացինք «Մշակի» № 65, 66-ում պ. M. M.-ի «Կուլտուրական հաստատութիւնները Նոր-Բայազէդում» վերնագիրը կրող յօդուածները։ Վարչութիւնս իր ուշադրութեան չէր արժանացնի պ. M. M.-ին, եթէ նա ընթերցող հասարակութեան առաջ այդքան այլանդակօրէն չըպատկերացնէր իր համար անհաճելի կուլտուրական հաստատութիւնները, սակայն հարկադրուած ի պաշտօնէ պատասխանում ենք։

Պ. Յօդուածագիրը նախ յորդորներ ու խրատներ է կարդում Նոր-Բայազէդի բանիմաց դասին, բայց երևի անտեղեակ է, որ քաղաքում եղած բանիմացները գործում են արդէն հասարակական այս կամ այն ասպարէզում, ուրեմն էլ ում համար են այդ յորդորները։

Պարոնը նախ իզուր յարձակւում է պատերազմի պատճառով տարի ու կէս առաջ փակուած ընթերցարանի վրայ։ Եթէ պ. յօդուածագիրը, նախ քան իր յօդուածը գրելը, նեղութիւն կրէր ծանօթանալու վարչութեանս գործունէութեան, անդամների թուի, Դպրոցների համար արածների հետ, կ'զգար, որ վարչութիւնն իւր բիւջէով—արել է կարելիից աւելին, պահել է ընթերցարան, ուր ստացւում էր 11 հայ ու ռուսերէն թերթ։ Այդ ինչպէս է եղել, որ յունուարին եկել էք և միայն հին թերթեր էք տեսել, կամ ինչու էք լռել և իր ժամանակին չէք հրատարակել, այլ սպասել էք տարի ու կէս։ Ի՞նչ գրելու նիւթ է «աթոռը ընկած տեսայ»։ Չի՞ կարող պատահել, որ ձեզանից մի րոպէ առաջ մէկը կարդալուց յետոյ վեր կենար գնալու, և աթոռը ընկնէր և նեղութիւն չ'կրէր վերցնելու։ Ճիշտ է, ընթերցարանից թերթեր գողացւում են, չնայելով ծառայ միշտ եղել է և վարչութիւնս ամեն միջոց գործ է դրել այդ բանի առաջն առնելու համար, միթէ չի պատահում այդպիսի երևոյթ հենց Թիֆլիսի «Պուշկինի և այլ ընթերցարաններում։ Կարդացէք թերթերը։ Դպրոցների մասին գրում էք՝ «չեն հետաքրքրւում»։ Այս ևս չի համապատասխանում իրականութեան։ Վարչութիւնս իր մի անդամի միջոցաւ, անցած մայիսին բանաւոր զեկուցում է արել խորհրդի անդամ Շահիկեանին Թիֆլիսում։ Դպրոցներին որքան հնարաւոր է այցելել է Ղշլաղլու և Քօլաղռանի դպրոցները և այլն. քանի բանի անգամ գործակալների հետ գնացել ենք գիւղեր, բայց մեզնից անկախ պայմանների պատճառով անկարելի եղաւ նոր դպրոցներ բաց անել. պատճառները անյարմար ենք համարում հրապարակելու։

Պարոնը գրում է. «Թիւրիմացութեամբ որբանոց են անուանել... իսկական անունը պէտք է լինէր ապրանոց»։ Այդ որբանոցում ծառայում են 2 կառավարչուհի, մէկը տնտեսական, միւսը դաստիարակութեան, ծառայող 4 քոյր, 5 ծառայ, 2 լուացարար. բոլորի վրայ հսկում է վարչութիւնը։ Այս 17 հոգուց մէկն ու մէկը անշուշտ ձեր չափ մաքրութեան մասին հասկացողութիւն կ'ունենար. իզուր էք իրողութիւնն այլանդակում։ Ճշմարիտ է, որբանոցում սկզբներում նկատւում էր որոշ թերութիւններ, որ յատուկ են ամեն մի նոր գործի ու հաստատութեան, բայց այժմ, երբ անցել է 4 ամիս բացման օրից, վարչութիւնս գոհ է իր կառավարչուհիներից։ Ուստի նախքան յօդուածի գրելը, լաւ կանէիք մտնէիք որբանոցը, ծանօթանալու կարգ ու կանոնին, երեխաների զբաղմունքներին և այլն, որպէս զի մտքեր չպղտորէիք։

Մի գեղեցիկ օր կառավարչուհին երեխաներից մեծերին տանում է որբանոցին մօտ պարտէզը խաղալու (որբանոցին բակ չունի, որի համար բնակարանը փոխւում է), քիչ յետոյ ինքը գնում է նայելու միւս որբերին։ Այդ ժամին տհա փողոցի երեխաներից մի խումբ քարեր են նետում երեխաների վրայ, որոնց մի քանիսը որբերից պատասխանում են. հենց նոյն ժամին գալիս է կառավարչուհին և երեխաներին տուն բերում։ Փոքրիկ մանկական չարութիւնը ուռցնում էք, մէջ քաշում ոստիկանութիւն, որ ճիշտ չէ։

Վարչութիւնս 2 անգամ որոշ նպատակով որբանոց է հրաւիրել Ամերիկայի հիւրեր Դոկտոր Մակ-Քալումին և Միստր Գրէյսերին, ծանօթացրել է յարգ. հիւրերին իւրաքանչիւր երեխայի տխուր ու ողբալի պատմութեան, ցոյց է տուել երեխաների հոգու կարողութիւնները, այլ և հիւրերը հետաքրքրութեամբ ծանօթանում էին երեխաներին և ապա ուշադրութեամբ լսում երգերին ու դիտում պարերը, որոնք և նուիրեցին որբերին 2000 ռուբլուց աւելի արժողութեամբ հագուստ. իսկ դուք, պարոն թղթակից, ինչպէ՞ս ագաւաղել էք այս գեղեցիկ ձեռնարկի դէպքերը։

Պարոնի բարեխղճութիւնը այն աստիճանի է հասնում, որ ի լուր աշխարհի յայտարարում է. «Դափ ու զուռնայով քէֆ են անում որբանոցում»։ Այդ մի այնպիսի չարամիտ զրպարտութիւն է, որին չ'գիտենք ինչ անուն տանք։

Հայութեան այս ծանր ու դժուար օրերին մարդիկ են հարկաւոր վերահաս լինելու բիւրաւոր ցաւերին և ոչ թէ անձնական հաշիւներից կուրացած, վիրաւորանք հասնել ու հայհոյել հրապարակի վրայ եղածներին։ Այո, պէտք է ճահիճը մաքրել... Հայհոյելով տուն չի շինուիլ, իսկ քննադատութիւնն էլ պէտք է լինի ազնիւ, մաքուր, որովհետև մեր փրկութիւնը այդպէս է պահանջում։

Կ. Հ. Բ. Ը-թեան Նոր-Բայազէդի ճիւղի վարչութեան
Նախագահ Խ. Մնացականեան
Անդամներ՝ Տ. Տէր-Միքայէլեան, Ազարեանց
Անդամ-Քարտուղար՝ Վ. Աֆրիկեանց

*) Ուղարկուած է տպագրութեան նաև „Մշակ" լրագրին.

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ



տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի    Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1    Дозволено военной цензурой

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 19

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Թիֆլիսի «Նպաստամատոյց» Ընկերութեան որբանոցի*

*10 մարտի 1916 թ.*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծնող. կենդ. մնաց հայր թէ մայր | Ծնողների տեղը | Գրաճանաչ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աստուրեկեան Արմէն | Մուշ | 11 | չունի | — | այո | |
| 2 | » Համբարձում | » | » | մայր | Թիֆլիս | „ | |
| 3 | » Արեշատ | » | 7 | » | » | ոչ | |
| 4 | Բաղդասարեան Արմենուհի | Շէյխ Եաղուբ | 12 | չունի | — | այո | |
| 5 | » Գեղանոյշ | » | 8 | » | — | „ | |
| 6 | Գափլանեան Յակոբ | Վան | 9 | » | — | „ | |
| 7 | » Յովհաննէս | » | 12 | » | — | „ | |
| 8 | Գասպարեան Գարեգին | Բիթլիս | 13 | » | — | „ | |
| 9 | Գեապլօյեան Ազիզ | Ոզմի | 11 | մայր | Թիֆլիս | „ | |
| 10 | Գէորգեան Ազնիւ | Խանօղլի | 14 | » | Էջմիածին | „ | |
| 11 | Ժամհարեան Անթառամ | Վան | 1 | չունի | — | „ | |
| 12 | Խալիկեան Արշակ | » | 14 | մայր | Երեւան | „ | |
| 13 | Խորոզեան Հեղինէ | » | 10 | հայր | Թիֆլիս | „ | |
| 14 | » Մայրանուշ | » | 12 | » | — | „ | |
| 15 | Ղարիպջանեան Անդրանիկ | Բիթլիս | 9 | մայր | — | „ | |
| 16 | Մարտօյեան Արամ | Գիւսնենց | 8 | ունի | Երեւան | „ | |
| 17 | Մարտիրոսեան Մկրտիչ | » | 14 | մայր | Էջմիածին | „ | |
| 18 | Մխիթարեան Վահագն | Գարաչօրան | 12 | չունի | — | „ | |
| 19 | Մկրտչեան Աւետիս | Թօփրաղլու | 10 | մայր | Թիֆլիս | „ | |
| 20 | » Արաքսի | Շօշանց | 12 | » | Էջմիածին | „ | |
| 21 | Մօսէյեան Բիրսօ | Լիզ | 11 | » | Թիֆլիս | „ | |
| 22 | » Հրաչեայ | » | 6 | » | » | ոչ | |
| 23 | Յարութիւնեան Սրշակ | Վան | 12 | » | Էջմիածին | այո | |
| 24 | Նուշիկեան Սզատ | » | 7 | » | Թիֆլիս | „ | |
| 25 | » Եղիշէ | » | 11 | հայր | » | „ | |
| 26 | Ջանիկեան Անահիտ | Սարիղամիշ | 11 | մայր | » | „ | |
| 27 | » Աղաւնի | » | 6 | » | » | ոչ | |
| 28 | Սարօյեան Ասլան | Գիւսնենց | 11 | հայր | Հայրենիք | այո | |
| 29 | Սիմօնեան Ազնիւ | » | 13 | չունի | — | „ | |
| 30 | Փանոսեան Փանոս | — | 13 | չունի | — | այո | |
| 31 | Ալմաստ | Ծածկ | 10 | մայր | Էջմիածին | „ | |
| 32 | » | Մուշ | 7 | հայր | Թիֆլիս | ոչ | |
| 33 | Անդրանիկ | » | 10 | մայր | » | այո | |
| 34 | » | » | 7 | հայր | » | ոչ | |
| 35 | Աւետիս | Վան | 5 | չունի | — | „ | |
| 36 | Արմենակ | Մուշ | 7 | » | — | ոչ | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 37 | Անուշաւան | Վան | 10 | » | — | այո |
| 38 | Գրիգոր | » | 9 | ունի | էջմիածին | " |
| 39 | » | Կարին | » | մայր | — | " |
| 40 | Գէորգ | Լիս | 10 | » | Գանձակ | " |
| 41 | Գիւրգան | Իշխ. գոմ. | 12 | » | էջմիածին | " |
| 42 | Գաբրիէլ | Վան | » | հայր | — | " |
| 43 | Դաւիթ | Սաւկոն | 10 | մայր | Թիֆլիս | " |
| 44 | Դանիէլ | Բաշգեադիկլար | 5 | ունի | » | ոչ |
| 45 | Եւնիկէ | Շէյխ Եաղուբ | 12 | մայր | » | այո |
| 46 | Երուանդ | Վան | 6 | ունի | » | ոչ |
| 47 | Զոզան | Մերպար | 5 | մայր | » | " |
| 48 | Զիննաթ | Ծղակ | 10 | չունի | — | այո |
| 49 | Զանո | Սաթմանկ | » | » | — | ոչ |
| 50 | Թաւրիչ | Խաչ գիւղ | 11 | ունի | էջմիածին | " |
| 51 | Թագուհի | Վան | 12 | մայր | » | այո |
| 52 | » | Խորգոմ | 10 | չունի | — | ոչ |
| 53 | Լորիս | Մուշ | 7 | մայր | Թիֆլիս | " |
| 54 | Լուսաբեր | Վան | 13 | չունի | — | այո |
| 55 | Ելպիսօ | Շիշան | 6 | հայր | Թիֆլիս | ոչ |
| 56 | Խաչատուր | Վան | 8 | ունի | էջմիածին | այո |
| 57 | Խորոտ | Կարմունջ | 9 | չունի | — | այո |
| 58 | Խաչօ | » | 7 | » | — | ոչ |
| 59 | Կալիպսէ | Գիւսնենց | 12 | մայր | — | այո |
| 60 | Կիրակոս | Դեօպալ | 10 | չունի | — | ոչ |
| 61 | Խաչօ | Կարմունջ | 8 | մայր | — | ոչ |
| 62 | Հրանտ | Վան | 13 | » | Պարսկաստան | այո |
| 63 | Հայկանուշ | Արտամետ | » | » | Թիֆլիս | " |
| 64 | » | Վան | 6 | » | » | ոչ |
| 65 | Մուշեղ | Լիզ | 8 | » | — | այո |
| 66 | Մխիթար | » | 8 | չունի | — | ոչ |
| 67 | Միհրան | Ալաշկերտ | 9 | մայր | Թիֆլիս | այո |
| 68 | Մարիամ | Վարդենիս | 12 | չունի | — | " |
| 69 | Մարգարիտ | Գիւսնենց | 11 | մայր | Գանձակ | " |
| 70 | Մանուկ | Իշխանի գոմ | 15 | չունի | — | այո |
| 71 | Մնացական | Վան | 13 | մայր | էջմիածին | " |
| 72 | Մամիկոն | Լիզ | 4 | » | Թիֆլիս | ոչ |
| 73 | Մաքրուհի | Վան | 14 | » | — | — |
| 74 | Մեսրոպ | » | 8 | հայր | — | այո |
| 75 | Մուրատ | » | 9 | ունի | — | — |
| 76 | Յաբէթ | Գիւսնենց | 6 | » | էջմիածին | ոչ |
| 77 | Նազար | Լիզ | 12 | չունի | — | այո |
| 78 | Նազիկ | Նոր գիւղ | — | — | — | — |
| 79 | Նշան | Քեօշք | 10 | հայր | էջմիածին | այո |
| 80 | Նոյեմզար | Բիթլիս | 10 | մայր | Թիֆլիս | " |
| 81 | Նիկար | Կուշտ | 11 | հայր | » | " |
| 82 | Նուարդ | Ալաշկերտ | 7 | ունի | էջմիածին | ոչ |
| 83 | Նշան | Աւանց | 5 | մայր | — | " |
| 84 | Շողեր | Խլաթ | 13 | չունի | — | " |
| 85 | Ոսկի | Ճոշնենց | 8 | ունի | էջմիածին | " |
| 86 | Պայծառ | » | 6 | » | » | " |
| 87 | Պետրոս | Մգնա | 8 | չունի | — | " |
| 88 | Ռոզա | Վան | 9 | ունի | էջմիածին | այո |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 89 | Սեդրակ | Գիւմնենց | — | մայր | — | " |
| 90 | Սարգիս | Կարմունջ | 10 | » | Բագու | " |
| 91 | Սերոբ | Վան | 13 | » | Էջմիածին | " |
| 92 | Սինո | Գիւմնենց | 10 | ունի | Էջմիածին | այո |
| 93 | Սիրուն | Ոզմի | » | » | » | » |
| 94 | Սանասար | Իշխ. գոմ. | » | » | » | » |
| 95 | Սանդուխտ | Լիզ | 12 | » | Գանձակ | » |
| 96 | » | Կաքովայ | 6 | չունի | — | ոչ |
| 97 | Սիրանուշ | Իշխ. գոմ. | 8 | հայր | Էջմիածին | » |
| 98 | » | Վան | 15 | ունի | Թիֆլիս | այո |
| 99 | » | Սալմաստ | 10 | մայր | » | » |
| 100 | » | Վան | 8 | » | » | » |
| 101 | » | Բաշկեադէկ. | 7 | » | — | ոչ |
| 102 | Սամուէլ | Բուլանըխ | 6 | հայր | — | » |
| 103 | Սարգիս | Լիզ | 8 | մայր | — | » |
| 104 | Սիրուն | Վան | 10 | չունի | — | այո |
| 105 | Սապրօ | Շէյխ Նաղուբ | 11 | մայր | Թիֆլիս | — |
| 106 | Սերովբ | Մուշ | 9 | » | » | այո |
| 107 | Վարդան | Ատկոն | 11 | » | » | » |
| 108 | » | Թաց | » | » | — | ոչ |
| 109 | » | Գիւմնենց | 9 | ունի | Էջմիածին | այո |
| 110 | Վարդանիկ | Վան | 7 | մայր | Թիֆլիս | » |
| 111 | Վաչագան | Արճէշ | 6 | » | » | ոչ |
| 112 | Վաղարշակ | Գիւմնենց | 11 | » | Էջմիածին | այո |
| 113 | Վարդեր | Վան | 10 | ունի | — | ոչ |
| 114 | Վահրիճ | Արճէշ | 13 | մայր | Թիֆլիս | այո |
| 115 | Տօնէ | Ատկոն | 12 | » | » | » |
| 116 | » | Խանօղլի | 10 | հայր | — | » |
| 117 | Սեդրակ | Լիզ | 7 | » | Թիֆլիս | ոչ |
| 118 | Իշխան | Բիթլիս | 7 | մայր | — | » |
| 119 | Փայլակ | Ալաշկերտ | 10 | չունի | — | այո |
| 120 | Ոստան | — | 8 | մայր | Թիֆլիս | ոչ |
| 121 | Քիշմիշ | Խլաթ | 13 | » | Էջմիածին | այո |
| 122 | Եղիպսօ | Վան | 8 | չունի | — | — |
| 123 | Վարսենիկ | » | 7 | հայր | — | ոչ |
| 124 | Եղիզա | » | 4 | չունի | — | » |

# Մոսկուայի Հայկ. Կոմ. Աշտարակի որբանոցների

25 փետր. 1916.

## I որբանոց.

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծանօթութիւն |
|---|---|---|---|---|
| 1 | Ալլաւերդեան Աղաւնի | Վան | 13 | |
| 2 | Ալոյեան Գրիգոր | Մալաքէն | 15 | |
| 3 | » Զարդար | » | 14 | |
| 4 | » Մելդի | » | 7 | |
| 5 | » Զօղո | » | 4 | |
| 6 | Աւտոյեան Սայեադ | Բերդ | 14 | |
| 7 | » Խաչօ | » | 10 | |
| 8 | » Սաչլի | » | 8 | |
| 9 | » Պօղոս | » | 6 | |
| 10 | Աւետիսեան Սաթենիկ | Վան | 14 | |
| 11 | Բարխուդարեան Ենոք | Բերդ | 10 | |
| 12 | Բաղդասարեան Շուշանիկ | Վան | 10 | |
| 13 | Բորոզողեան Պարգեւանուշ | » | 9 | |
| 14 | » Վանանոյշ | » | 7 | |
| 15 | Գրիգորեան Ազնիւ | Արդո | 14 | |
| 16 | Դաւթեան Անդրանիկ | Վան | 10 | |
| 17 | Էգոյեան Զինա | » | 12 | |
| 18 | Էրոյեան Միքէլ | Խուլփ | 8 | |
| 19 | Խաչատրեան Ազնիւ | Փրխուս | 14 | |
| 20 | Կնեազեան Սերոբ | Բերդ | 12 | |
| 21 | » Զաւան | » | 7 | |
| 22 | Կարապետեան Մաքրուհի | Ցխա գիւղ | 9 | |
| 23 | Համբարձումեան Հայաստան | Արգուր | 10 | |
| 24 | Մանուկեան Մարգարիտ | Փրխուս | 12 | |
| 25 | » Սօղո | » | 10 | |
| 26 | Մարգարեան Զանօ | » | 12 | |
| 27 | » Բայաղ | » | 10 | |
| 28 | Մարգարեան Հմայեակ | » | 8 | |
| 29 | Մարկոսեան Եսայի | Վան | 10 | |
| 30 | Մարտիրոսեան Անուշ | Մուշ | 10 | |
| 31 | Մետոյեան Պարիժ | Փրխուս | 8 | |
| 32 | Մկրտչեան Սոկրատ | » | 14 | |
| 33 | » Մարգարիտ | » | 8 | |
| 34 | Մկոյեան Խուդօ | Բերկրի | 9 | |
| 35 | Մուրադեան Արամ | Արջակ | 14 | |
| 36 | » Աֆէն | Խուլփ | 15 | |
| 37 | » Լեոն | » | 10 | |
| 38 | » Թագուհի | » | 8 | |
| 39 | » Զախտաս | » | 6 | |
| 40 | » Արփենիկ | » | 4 | |
| 41 | » Հայրիկ | Վան | 15 | |
| 42 | » Գալօ | » | 10 | |
| 43 | » Ֆահրատ | Արջակ | 9 | |
| 44 | Յակոբեան Մուշեղ | Լէզ | 10 | |
| 45 | » Զարեհ | Ցխա գիւղ | 14 | |
| 46 | » Հայրիկ | Բոզդա | 10 | |
| 47 | » Բարդող | Արջակ | 10 | |
| 48 | » Ազատ | » | 8 | |
| 49 | Յարութիւնեան Յակոբ | Նոր գիւղ | 9 | |
| 50 | » Մեսրոպ | Փրխուս | 12 | |
| 51 | Կարապետեան Ալմաս | Արգուր | 12 | |
| 52 | » Երոպ | » | 10 | |
| 53 | » Վարդգէս | » | 8 | |
| 54 | Պետրոսեան Միսակ | Փրխուս | 15 | |
| 55 | » Լեոն | » | 10 | |
| 56 | » Սիրանուշ | » | 6 | |
| 57 | Սափարեան Միսակ | » | 12 | |
| 58 | » Մելիք | » | 10 | |
| 59 | Սափարեան Մելիք | Փրխուս | 8 | |
| 60 | » Գրիգոր | Բերդ | 14 | |
| 61 | Վարդանեան Զմրուխտ | Փրխուս | 10 | |
| 62 | » Անթառամ | » | 9 | |
| 63 | » Միսակ | » | 7 | |